# Աբովյանի տուն-թանգարանը Քանաքեռում



Լուսանկարը՝ ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ

Տուն-թանգարանները անցյալի մշակույթի մեծ երախտավորների հետ սերունդների հոգևոր մերձեցման օջախներ են: Այդպիսիք անցյալներում մենք չենք ունեցել:

Բազում տասնամյակներ ջանքեր են թափվել թանգարանի վերածելու այն խրճիթը, ուր ծնվել է անմահ Աբովյանը, և Երևան քաղաքում կանգնեցնել Աբովյանի բրոնզաձույլ արձանը: Երկու ցանկությունն էլ իրականություն դարձավ խորհրդային իշխանության պայմաններում:

1938 թ. Սովետական Հայաստանի կառավարությունը որոշեց թանգարանի վերածել Աբովյանների տոհմային տան հնագույն մասը, որն ընդգրկում էր այվանը կամ պատշգամբը, հյուրասենյակը, թոնրատունը և փոքրիկ մառանը: Այդ հարկաբաժինները զբաղեցնում էին Աբովյանի հորեղբոր ժառանգները, որոնք թեպետև տարբեր ժամանակներում նորոգումներ ու փոփոխություններ էին կատարել շենքի ներսում ու դրսում, բայց չէին աղավաղել նրա նախնական տեսքը: Ի դեպ, այժմյան թոնրատան և մառանի տեղում էր գտնվում Աբովյանների նախկին ընդարձակ մառանը, ուր 1809 թ. հոկտեմբերին ծնվել է Խաչատուր Աբովյանը: Այսքանն էլ բավական էր, որ այդ շինությունը համազգային սրբություն հռչակվեր:

Դժվարին էր թանգարանի ստեղծողների վիճակը: Երկար են տքնել աբովյանագետներ Ե. Շահազիզը, Հ. Մուրադյանը, Ռ. Զարյանը և ուրիշներ: Նախ Աբովյանն այդ տանն ապրել էր մինչև ինը տարեկան հասակը, իսկ հետագայում, մինչև 1848 թվականը, կարճ ժամանակով հյուր էր գնացել իր հարազատներին՝ մորը, եղբայրներին, հորեղբորը, որոնք բոլորն էլ վախճանվել էին 1847—1854 թվականների ընթացքում: Եվ հետո՝ նրա օգտագործած իրերը և զգեստները Քանաքեռի տանը չէին պահվում, այլ կնոջ, որդու և աղջըկա մոտ, որոնք ապրել են Թիֆլիսում ու Երևանում, և տարիների հետ աստիճանաբար կորցրել են ամեն բան: Աբովյանի գրադարանը 1920 թվականին զոհ գնաց Ալեքսանդրապոլում թուրքական արշավանքերի օրերին: Զգալի կորուստներով են մեզ հասել նաև Աբովյանի ձեռագրերը, որոնք նրա թոռները 1938 թ. ապրիլին հանձնեցին Հայաստանի գրական թանգարանին (այժմյան Ե. Չարենցի անվան գրականության ու արվեստի թանգարան): Միայն ձեռագրերի լուսապատճենների ցուցադրումով՝ Աբովյանի դարաշրջանի ու ապրած միջավայրի մթնոլորտն ըստեղծել անկարելի էր: Որոշվեց բացը լրացնել հնօրյա հատկանշական իրերով՝ օրորոց, թախտ, հայելի, զանազան ամաններ, Աբովյանի ունեցած գրքերի այլ օրինակներ, գեղանկարչական աշխատանքներ և այլն: Այսպես տեսան Աբովյանի թանգարանը նրա առաջին այցելուները 1939 թ. դեկտեմբերին:

Թանգարանն հետագայում մի քանի անգամ վերանորոգվեց: Այժմ հինգերորդ անգամ է վերակառուցվում: Խ. Աբովյանի խրճիթը իր հարկաբաժիններով առնված է ծածկի տակ, իսկ վերևում, հենասյուների վրա, կառուցված են նոր և ընդարձակ ցուցադրական դահլիճ ու համապատասխան սրահներ: Բարեկարգվել է շրջապատը: Թանգարանի հրապարակում կանգնած է Աբովյանի անզուգական արձանը, որ կերտել է նշանավոր քանդակագործ Անդրեաս Տեր-Մարուքյանը՝ Փարիզում, 1915 թվականին: Այստեղ է կառուցված և մեկ այլ կոթող՝ հայ և էստոն ժողովուրդների բարեկամությունը խորհրդանշող, որի սկզբնավորողը Աբովյանն էր: Թանգարանը հիմա ավելի լայն հնարավորություն ունի այցելուներին փոխանցելու Աբովյանի ապրած միջավայրի ու դարաշրջանի ոգին, նրա անմահ պատգամները: Ավանդույթ է դարձել, որ ամեն տարի Երևանի Աբովյանի անունը կրող մանկավարժական ինստիտուտի առաջին կուրսի սաները այստեղ են հավաքվում և հանդիսավոր երդում տալիս՝ ուսանել ջանասիրաբար և սրբությամբ ծառայել հայրենի ժողովրդին:

*ՊԻՈՆ ՀԱԿՈԲՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*



# ՀԱՅՐԵՆԻՔԻՍ

Դու ծաղիկ ես կապուտակ,
Բացված լեռան լանջին,
Ես ցող եմ քո թերթերին,
Ես չեմ կարող ապրել առանց ծաղկի:

Դու առվակ ես զուլալ,
Ես կարկաչն եմ քո ժիր,
Ես չեմ կարող լինել
Առանց առվակի:

Դու անտառ ես թավուտ,
Ես եղնիկն եմ քո մեջ,
Ես չեմ կարող ապրել
Առանց անտառի:

Դու իմ հայրենիքն ես,
Հայաստան իմ չքնաղ,
Ես առանց քեզ
Չեմ կարող ապրել:

*ՆԱՐԻՆԵ ԱՄԻՐՅԱՆ*

*Դիլիջան, 9-րդ դասարան*





# ՓԱՌՔԻ ԾԱՌՈՒՂՈՒՄ

Չեմ պատկերացնում պայթյունը ռումբի,
Եվ մարտի դաշտը չեմ պատկերացնում,
Բայց գոհված քաջի լուռ շիրմաթմբին
Ծաղիկներով եմ միշտ այցի գնում:

Նրա անունը անհայտ է, ափսոս,
Հեռվի՞ց է արդյոք և կամ տեղացի՞,
Իր խոր գրկի մեջ շիրմաթումբն անխոս
Գաղտնիքն է պահում անհայտ ընկածի:

Իսկ չորս բոլորը հողն է արթնացել,
Ծաղկանց ծովի մեջ լողում է քամին,
Եվ գերեզմանի մոտ բոլորածն
Կանգնած ծառերն են խոնարհվել լռին:

Ի՜նչ գեղեցիկ են հարթավայր ու սար,
Եվ ի՜նչ անուշ են գետերը խոսում,
Բայց կարելի՞ է վիշտը մոռանալ,
Մոռանալ կռվի հետքերը խոսուն:

Գուցե թե... բայց և ահեղ մարտերում
Իրենց գլուխը շատերը դրին,
Սակայն այսօր էլ մարդկանց սրտերում,
Կանաչ է նրանց փառքի ծառուղին:

*ՆԱՏԱԼՅԱ ՄՈՒՇՉԻՆԻՆԱ*
*Օդեսայի № 10 դպր., 9-րդ դասարան*

*Թարգմ. Մ. ՌՍԿԱՆՅԱՆԻ*

*Լուսանկարը՝ ԿԱՐԵՆ ՄԻՐԶՈՅԱՆԻ Երևանի № 160 դպր., 5-րդ դասարան*

Առաջին անգամ եմ գրում ձեզ: Ուղարկում եմ իմ առաջին պատմվածքը: Այն գրելու միտքը հղացա դրամապաշտության մասին շարադրություն գրելիս, մանավանդ, որ այդպիսի ընտանիք ես ճանաչում եմ: Սակայն այստեղ գույները նույնիսկ մեղմացրել եմ:

ԿԱՐԵՆ ՏԵՐ-ՍԱՐԳՍՅԱՆ
Երևանի № 142 դպրոցի 10-րդ դասարանի աշակերտ




ՆԿ. ՆԻԿՈԼԱՅ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Արդեն մայրամուտ էր: Արևի վերջին ճառագայթները կիսաբաց պատուհանից թափանցել էին սենյակ, ոսկեզօծել հանդարտորեն կախված վարագույրները: Սոնիկը լուռ ու անշարժ պառկել էր մահճակալին: Աչքերի ոչինչ չհարցնող, անիմաստ հայացքը թափառում էր ննջարանի գորգապատ պատերի, կահ-կարասու վրայով: Ահա չինական թանկարժեք անոթը, որով այնքան սքանչանում էր ինքը: Ահա բյուրեղյա լամպը, որը վայրկենապես փայլատակեց վրան ընկած ծիածանագույն շողքից: Աղջկա հայացքը շարունակեց թափառել թանկարժեք իրերի, կարասիների վրա: Աչքերն ընկրսեցին հոգնել այդ շլացնող շքեղությունից: Ո՞ւմ համար էր, ինչի՞ համար էր: Նախանձելի պայմաններ, ներփակ, եսով շաղախված: Նրա շուրթերը ձըգվեցին մի հեգնախառն ժպիտով: Աչքերը կանգ առան աթոռին նետված դպրոցական պայուսակի վրա և փայլեցին անսովոր փայլով... Ինչպե՞ս, ինչի՞ց սկսվեց, ինչի՞ց... Չկարողանալով գտնել պատասխանը, տրտմությամբ լի աչքերը հառեց դեղնակապույտ ամպերի ծվեններով զարդարված նարնջագույն, վճիտ երկնքին: Գարուն էր: Ծիծեռնակները շրջաններ կատարելով զբաղված էին օրավերջի որսով: Նրանք կերակրում են ձագերին, ապրում արդար, ազնիվ: Սոնիկը դառը ժպտաց իր այդ միամիտ մտքի վրա: Մի ծիծեռնակը հազիվ հասցրեց շրջապըտույտ կատարել, չբախվելու համար ապակիներին: Զարմանալի է, դրանից հետո միայն հատուկենտ թռչնակներ էին երևում լուսամուտի շրջանակում: Հանկարծ աչքերը ծակեցին բոսորագույն արևի ճառագայթները: Աղջիկն արագ շրջեց գլուխը պատի կողմը. «Ինչի՞ց սկսվեց, ինչպե՞ս եղավ»: Մըշուշապատ հիշողության մեջ հառնում

# Ստեղծագործում են դպրոցականները



էր միայն դասասենյակը, քրքջացող դասարանը և նա, նա... հենվել էր պատին ու կախել գլուխը: Նա երևի ամաչում էր նույնքան, որքան ինքը:

Իրենք միասին էին դպրոց գնում ու գալիս, միասին խաղում, վիճում ու նույն վայրկյանին էլ հաշտվում: Մի լուռ պայմանավորվածությամբ ամեն առավոտ հանդիպում էին միևնույն տեղում ու կատակելով, շաղակրատելով, թռչկոտելով ուղևորվում դպրոց:

Իսկ աշնանից սկսած, թեև դարձյալ միասին էին, բայց այնպես անկաշկանդ չէին, ինչպես առաջ:

Ի՞նչ էր տեղի ունեցել: Քայլում էին միասին, միմիայն՝ բարև ու լռություն կամ ցտեսություն: Երկուսն էլ զգում էին, որ խոսելու շատ բան ունեն, որ այրվում են ինչ-որ ներքին տագնապից, բայց չէին համարձակվում արտահայտվել: Սակայն, չնայած այդ լռությանը, աղջկան թվում էր, թե հասկանում են միմյանց:

Բայց այսօր, այսօր... Մոր հասցեին ասված խոսքերը, իր ամոթը... Ամոթից, բարկությունից կարմրել էր, վառվում էին դեմքը, ականջները: Առաստաղի մթության միջից նրա աչքի առջև պատկերվեցին դասարանցիների հեգնական ժպիտները: Նա շրջեց դեմքը՝ աչքերում փայլեցնելով զայրույթի արցունքները:

— Էլի ի՞նչ է պատահել դրան,— դռան ետևից լսվեց քրոջ ձայնը:

— Դպրոցից եկավ կատաղած, մըտավ ննջարան ու դեռ դուրս չի եկել: Նայեցի, շորերով պառկել է ու քնել,— պատասխանեց մոր վրդովված ձայնը:

— Սոնի՛կ, աղջի՛կս, քնա՞ծ ես,— ներս մտնելով հարցրեց նա:

— Ո՛չ:

— Թեյ ուզո՞ւմ ես, հիմա բերեմ:

— Ո՛չ:

— Քեզ վա՞տ ես զգում:

Աղջիկը տարուբերեց գլուխը:

Մայրը տարակուսած դուրս գնաց:

Սոնիկը զգուշությամբ մոտեցավ դըռանը ու կողպեց այն: «Խեղճ մայրիկ, սիրելի մայրիկ»,— ակամա շշնջաց նա արդեն մահճակալում: Նա սիրում է մորը, նա իրավունք չունի վատ մըտածել նրա մասին:: Իրավունք չունի՞: Բայց մշտական երկյուղը, անհանգիստ խիղճը, անհանգիստ կյանքը: Նա զըզվել է, հոգնել: Ամաչում էր, որ դասարանում բոլորից լավ ինքն է հագնվում, որ ամենից շատ դրամ իր մոտ է լինում... Նրանից հեռացել էր իր ամենամոտիկ ընկերուհին: Նա հաճախ որսում էր ուսուցիչների, ընկերների

ծանր հայացքները: «Աղջիկս խեղճ ու կրակ չէ,— հպարտանում էր մայրը:— Հապա ինչպե՞ս, այս դարում այդպես պետք է լինել»: Եվ պարծենում էր՝ «Սոնիկս ճաշակով է» ու ոչինչ չէր խնայում «ճաշակով աղջկա համար»: Իսկ աղջիկը ժամերով կանգնում էր հայելու մոտ, փոխում զգեստները՝ յուրաքանչյուրին համապատասխան սանրվածք մշակելով:

Բայց նրան հանկարծ կարծես մըտրակելով արթնացրին քնից: Ոչ, ինչու միանգամից: Այդ նախապատրաստվել էր բազում գիշերների, բազում պըրպըտումների ընթացքում:

Հիմա կգա հայրը (իսկ գուցե եկե՞լ է), ու նրանք կսկսեն հաշվել մոր օրվա «վաստակը»... Քույրը կսկսի շողոքորթել՝ մորից իր բաժինը ստանալու հույսով: Եվ ապա դարձյալ կգնեն թանկարժեք իրեր, որոնք նախապես միշտ ծրագրված են լինում:

Սոնան հանկարծ զգաց, որ իրեն պակասում է մի խելացի, բարի, օգնելու պատրաստ բարեկամ, արտակից ընկեր: Իսկ ո՞վ, ո՞վ: Մտաբերեց բազմաթիվ դեմքեր՝ բարի ու չար, մոտիկ ու հեռավոր: Նա անզուսպ ցանկություն ուներ պատմելու, ցավը բաժանելու հասկացող մեկի հետ: Բայց ո՞վ, ո՞վ: Նա: Սակայն շուտով նրա պատկերն էլ աղոտացավ մյուսների պես: Ոչ, նա չի հասկանա: Վերջապես, հառեց նրա առջև սիրելի ուսուցչուհու բարի, գեղեցիկ դեմքը: Այո, նա՛, միայն նա՛ կհասկանա իրեն: Կհասկանա, բայց... Դիմե՞լ արդյոք: Ինքը շատ անգամ էր ցանկություն ունեցել զրուցել նրա հետ, սակայն միշտ ամոթից թե մի այլ զգացմունքից դրդված՝ խուսափել էր:

Հանկարծ ուշադրությունը գրավեց սենյակի անսովոր մթությունը: Մի՞թե արդեն գիշեր է: Մութ է: Բայց վաղը լույս կլինի: Կշողա արևը, կերգեն թըռչունները, ձագերին կկերակրեն ծիծեռնակները, կկերակրեն... «Ա՜խ, մայրի՜կ, մայրի՜կ»,— իրականությանը վերադարձավ նա: «Ես սիրում եմ քեզ, բայց չեմ ուզում համակերպվել, չեմ ուզում... Գուցե խոսե՞մ հետը»: Անօգուտ է, կարելի՞ է միթե փոխել հասուն մարդուն: Հապա ի՞նչ անել: Սիրել նրան ինչպես կա՞: Ի՞նչ անել, ի՞նչ անել: Գուցե հեռանալ: Ու՞ր, ինչպե՞ս:

Նա զգաց, որ մրսում է: Կծկվեց: Երկինքը մութ է ու խորհրդավոր, զարդարված մարգարիտներով: Կարծես մուգ կապույտ թավշյա ծածկոցին շաղ էին տվել տարբեր մեծության ու պայծառության թանկագին քարեր: Բայց չէ՞ որ դրանք աստղեր են, իսկ այ, այն մեծ, շատ մեծ ու լուսավոր գունդը լուսինն է, սիրելի լուսինը: Ուրեմն ինքը քնել էր: Նա ելավ անկողնուց: Բոլորովին սթափվելով բարձրացավ ու տարտամ քայլելով մոտեցավ լուսամուտին:

Գիշեր է: Քնել է ողջ քաղաքը... Միայն նա է արթուն: Կանգնել ու նայում է հույս ու լույս ճառագայթող երկնքին: Գիշեր է, լույս է, ինքն է միայն արթուն:

Կանգնել նայում է: Արծաթագույն լույսով փայլում են մազերը, շուրթերը, աչքերը: Հայացքը թափառում է անծայրածիր կապույտ հեռուներում: Երազային գիշեր: Փայլատ լույս, փայլում է նրա կիսադեմը: Նա գեղեցիկ է, իրոք գեղեցիկ է:

# ՀԵՔԻԱԹ

ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

Կապույտ երկնքից,
Կապույտ շորերով,
Կիջնեն տիկնիկներ
Ամպե թևերով...

Իջան, ասացին.
— Քո քույրերն ենք մենք,
Արի՛ դու մեզ հետ,
Քեզ երկինք տանենք։

Եվ ինձ՝ իրենց նուրբ
Թևերի վրա
Դեպի երկնքի
Կապույտը տարան։

Ճախրեցի թեթև
Այնտեղ ժամերով,
Խաղացի լույսի
Ոսկե շողերով։

Բայց կարոտեցի
Մայրիկիս հանկարծ
Եվ, գրկած մի շող,
Լուռ սահեցի ցած։

...Թե որ ես կրկին
Կամենամ թռչել,
Աչքս կփակեմ,
Նրանց կկանչեմ։

Կապույտ երկնքից,
Կապույտ շորերով,
Կիջնեն տիկնիկներ
Ամպե թևերով...

# ԻՆՉՊԵՍ ԾՆՎԵՑ ԱՅՍ ԵՐԳԸ

ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ

Աղբյուրն ելավ ակունքից,
Մի հուն գտավ իր համար
Ու դարձավ առու։

Առուն հոսեց սարերից,
Իջավ դաշտերը ծարավ
Դարձավ հասկ գարու։

Օրոր-շորոր լորն եկավ,
Գարին նրա կտուցին
Դարձավ ուրախ երգ։

Հետո այդ երգն ինձ հասավ,
Ես էլ ահա բերեցի,
Որ ուրախ երգեք։

# ՀԱՄԵՐԳ

Սաղարթների մեջ կանաչ
Թռչունները երգեցին
Խմբերո՜վ, խմբերո՜վ։

Տղրիդները ձեռքն առան
Ջութակներն ու ձայնեցին
Չափերո՜վ, չափերո՜վ։

Ծառի բնին չորացած
Փայտփորիկը հարվածեց
Հանգերո՜վ, հանգերո՜վ։

Մեծ համերգ է, մեծ համերգ,
Երգ ու նվագ է հոսում
Հանդերո՜վ, հանդերո՜վ։



Լուսանկարը ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ

**Երևանի լենինյան շրջանում, այնտեղ, ուր Օրջոնիկիձեի պողոտան հատվում է Թումանցիների փողոցի հետ, նորաստեղծ հրապարակն է «Փառք աշխատանքին» մոնումենտալ արձանով։ Իսկ № 11 դպրոցը գտնվում է այդ հրապարակի մոտ։ Դպրոցի սաները մասնակցել են հուշարձանի բացմանը, վերցրել հրապարակի ու «Փառք աշխատանքին» հուշարձանի շեֆությունը։ Վերջերս դպրոցի դրուժինայի խորհուրդը որոշեց ոչ միայն շարունակել պիոներների տնկած թփերի ու ծաղիկների խնամքը, այլև արձանի ողջ շրջակայքը ծաղկապատել, տնկել ու աճեցնել ծառեր, և աշխատանքը փառաբանող այս հրապարակի մոտ ստեղծել նոր ծառուղի, որ կկոչվի «Պիոներիա—60»։**

ԱՅՍ պատմությունը մի աղջկա մասին է, որն ապրում է Վրաստանի Ծալկայի շրջանի Այազմա գյուղում։ Ութերորդ դասարանի աշակերտուհի է, անունն է Սիրանուշ, Սիրանուշ Այվազյան։ Գյուղաքնակ շատ աղջիկների նման նա նույնպես դասերին զուգակցում է հողի աշխատանքը։ Երբեք ճամբար չի գնացել, մի անգամ միայն եղել է Երևանում, այն էլ եղբոր հարսանիքին։ Կարդացել է գյուղի գրադարանի համարյա բոլոր գրքերը։ Երբ մայրը հիվանդանում է, կամ այլ պատճառով բացակայում գյուղից, Սիրանուշն է ամռանը՝ առավոտյան ժամը 5-ին, երեկոյան ժամը 9-ին, ձմռանը՝ առավոտյան 8-ին և երեկոյն ժամը 6-ին իրենց անասուններին ջուր տալիս և կովերը կթում։ Նա գարնանից սկսած մինչև խոր աշուն օգնում է մորը նաև տընամերձ հողամասը մըշակելիս և բերքը հավաքելիս, իսկ ամառային արձակուրդին մոր հետ աշխատում է սովխոզի դաշտերում։

Սեպտեմբերի մեկը գյուղում դիմավորում են հատուկ, մեծ հանդիսություններով, անկախ եղանակից։ Դպրոցի ընդարձակ բակի մեջտեղում մի բարձր քար կա, իսկ պարսպի շուրջը հընկայական ծառեր։ Ժամը յոթից սկսած դպրոցի բակում հավաքվում են աշակերտները, իսկ ամբողջ գյուղը գալիս հավաքվում է դուրսը՝ դըպ-

# ԱՆՈՒՆԸ ՍԻՐԱՆՈՒՇ Է



րոցի բակի շուրջը, ծառերի տակ:

Աշակերտները քառանկյունաձև շարք են կանգնում բակի լայն, բեմի նման քարի շուրջը: Քարի մոտ հավաքվում են բոլոր ուսուցիչները: Հնչում է պիոներական շեփորը, տկտկում է թմբուկը, և «Զգաստ» հրամանը մի պահ անշարժացնում է շարքերը: Դիրեկտորը ողջունում և հույս է հայտնում, որ արդեն մի տարով մեծացած ու հասունացած աշակերտները առավել լրջությամբ ու ջանասիրությամբ կսովորեն նոր ուսումնական տարում:

Ուսմասվարը նրան է հանձնում մի թղթապանակ:

— Անցած ուսումնական տարում ցուցաբերած գերազանց վարքի և բարձր առաջադիմության համար Այազմա գյուղի ութամյա դպրոցի մանկավարժական կոլեկտիվը հետևյալ աշակերտներին պարգևատրում է գովասանագրերով,— թղթապանակն առնելով ուսմասվարից,, հայտարարում է դիրեկտորը:

«Այվազյան Սիրանուշ» անցնում է բոլորի մըտքով:

Եվ իրոք.

— Այվազյան Սիրանուշ Սերգեյի,-բարձր ու հնչեղ կարդում է դիրեկտորը առաջին անունը:

Ընդունված կարգի համաձայն շարքից դուրս է գալիս բարձրահասակ աղջիկը և ժպտալով մոտենում դիրեկտորին:

Ութ տարվա ընթացքում ութ առաջին դասարան է ոտք դըրել, և դպրոցում նրանց առաջին օրվա ամենաանմոռանալի տպավորությունը Սիրանուշին ընվիրված ծափահարությունները են: Նրանք այդ օրվանից սկսած Սիրանուշին մատով են ցույց տալիս: Եվ եղել են առաջին դասարաններ, որոնց դասամատյանները հանդիսացել են գերազանցիկների ցուցակներ: Եղել են նաև այնպիսի առաջին դասարաններ, որոնց աղջիկները քայլել են Սիրանուշի նման, իսկ տղաները քույրերի շուրթերից ուզեցել են լսել Սիրանուշի արտասանության շեշտերը:

...Հովիտը, որտեղ գըտնըվում է գյուղը և գյուղում՝ դպրոցը, իսկ դպրոցում՝ այդ բոլոր դասարանները, շատ մեծ չէ: Շուրջ բոլորը բարձր լեռներ են, և հեռուները տանող ճանապարհը, որ անցնում է այդ լեռներով, չի երևում:

Ձմռան մռայլ գիշերներին, երբ թվում է, թե ձյունը թանձր ցանցի պես ձգվել է հովտի շուրջը շարված սարերի վրա, և հովտում մոլեգնում է բուքը, տաք վառարանների կողքին նստածների աչքին երևում են դեպի աշխարհի ծայրերը տանող կանաչ ճանապարհները: Այդ գիշերներին դպրոցի աշակերտներից յուրաքանչյուրի երևակայությունը սլանում է դեպի իրեն սպասող անծայրածիր հեռաստանները:

Ժամանակը կգա և երազած այդ կանաչ ճանապարհները ճոճվելով կգան, կմոտենան, կըկանգնեն նրանց ոտքերի առաջ:

— Ո՞ւր տանենք,— կըհարցնեն նրանք:

Սիրանուշին մնում է դեռ երկու տարի և այդ երկու տարվա մեջ պիտի հստականան ու ավելի լայնանան ձմռան հեքիաթներում ձգվող կանաչ ճանապարհները:

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 53. ԳՈՎՔ ՄԱՅՐԵՆԻ ԼԵԶՎԻՆ

Պատասխանել այն հարցին, թե ինչո՞ւ ենք սիրում մեր մայրենի լեզուն, նույնն է ասել թե ինչո՞ւ ենք սիրում մեր հարազատ մորը: Այդ սերը բացատրության կարիք չի զգում: Մարդը ինքը չէ իր մորը ընտրում, ինչպես չի ընտրում իր հայրենիքն ու ազգությունը: Հայրենիքը, մայրը, ազգությունը մարդուս տրվում են մեկընդմիշտ, առհավետ, և մարդիկ նրանց սիրում են առանց վերապահության:

Մենք առանց այն էլ լավ գիտենք, թե մեր մայրերն ինչքա՜ն ջանք, անվերադարձնելի ջանք են դրել և տառապանք են քաշել մեզ մեծացնելու համար: Եվ դա ավելի է խորացնում մեր սերը:

Բայց մենք այնքան էլ լավ չգիտենք, թե մեր մայրենի լեզուն, պեհեր դարերի խորքից սկիզբ առնելով, ինչքա՜ն դժվար ճանապարհ է անցել մեր շուրթերին վերստին ծաղկելու համար: Երբ մեր ժողովուրդը 5-րդ դարում կորցրեց իր պետականությունը և ռազմական հզորությունը, դրանց փոխարինելու եկավ Մեսրոպ Մաշտոցի ստեղծած հանճարեղ այբուբենը, որն իր զորությունը պահպանում է ահա մեկ և կես հազարամյակ: Հազվագյուտ երևույթ ժողովուրդների մշակութային պատմության մեջ, որի մասին ֆրանսիացի մեծ լեզվաբան Անտուան Մեյեն այսպես է գրել. «Հայտնի է, որ հայ այբուբենը մի գլուխգործոց է: Հայ հնչյունաբանության հնչյուններից յուրաքանչյուրը հատուկ նշանով նոթագրըված է, և համակարգն այնքան լավ է հաստատված, որ հայ ազգին տվել է հնչաբանության մի վերջնական արտահայտություն, որը պահպանված է մինչև այսօր առանց փոփոխություն կրելու... Այսպես կազմվեց մի գրական լեզու, որը ճոխ է և որը կարող է արտահայտել այն ամենը, ինչ հույն լեզուն կարող էր արտահայտել: Այդ լեզվի ճոխությունն ու ճկունությունն ուժ են եղել հայ ազգի համար»:

Առանց վարանելու կարող ենք ասել, որ Մաշտոցի գյուտը լեզվական-մշակութային սխրանք լինելուց առաջ, ավելի ճիշտ՝ դըրա հետ միասին, քաղաքական սխրանք էր, դարեր ի վեր հայոց լեզուն մեր ժողովըրդի կյանքում կատարել է և՛ կուլտուրական-կրթական, և՛ քաղաքական-պաշտպանական դեր:

Լեզվի հենց այդ դերը նկատի ուներ ռուս նշանավոր մտածող և մանկավարժ Կ. Ուշինսկին, որ գրում էր, թե բոլոր բըռնություններից ամենավատթարն այն է, երբ ժողովրդից խլում են իր լեզուն՝ իր ազգային գոյության հիմքը. «Խլեցեք ժողովրդից ամեն ինչ, նա ամեն բան կարող է վերադարձնել. սակայն խլեցեք լեզուն, և նա այլևս լեզու չի ստեղծի, կարող է նույնիսկ նոր հայրենիք ստեղծել, բայց լեզու՝ երբե՛ք. մեռավ լեզուն ժողովրդի շուրթերում՝ կմեռնի և ժողովուրդը»:

Մեր ժողովուրդն ապրել է ու գոյատևել, որովհետև ամենադժվար դարերում անգամ պահպանել է իր լեզուն, իսկ լեզուն՝ իր ժողովրդին:

Ուրեմն, ինչքա՞ն ավելի մեր մայրենի լեզուն արժանի է ծնրադիր հարգանքի, սիրո, գուրգուրանքի:

Կարելի է մտաբերել նշանավոր օտարազգիների, որ սիրել, գնահատել են հայոց լեզուն: Մեծ բանաստեղծ լորդ Բայրոնը ժամանակին հայերեն է ուսանել Մխիթարյան միաբանների մոտ՝ Վենետիկից ոչ հեռու գտնվող Սուրբ Ղազար կղզում, և թողել է այսպիսի գրառում. «Ճոխ է հայոց լեզուն, և առատորեն կվարձատրի ուսումնասիրողին»:

Ժամանակին, «Թշվառները» վեպը հայերեն թարգմանելու թույլտվություն ստանալու համար, հայտնի թարգմանիչ Գրիգոր Չիլինկիրյանը նամակ է գրել Վիկտոր Հյուգոյին: Ի պատասխան հեղինակը գրել է. «Ձեր հնամենի լեզուն ես չգիտեմ, բայց սիրում եմ այդ լեզուն: Դրա մեջ արևելքն եմ զգում, դարերն եմ նշմարում այնտեղ, տեսնում եմ անցյալի խորհրդավոր նշույլի շողարձակումը: Ինձ համար պարծանք է հայերեն թարգմանվելը»:

Աշխարհի տարբեր հորիզոններում հայերենի ուսումնասիրությամբ զբաղվում են երևելի գիտնականներ, հայագիտական կենտրոններ և ամբիոններ: Տողերիս գրողը բախտ է ունեցել ծանոթանալու այդ գիտնականներից մեկին՝ ֆրանսիացի Ֆրեդերիկ Ֆեյդիին, մի վերին աստիճանի կիրթ ու հմայիչ մարդու, որ հիանալի խոսում է հայերեն: Ահա թե նա ինչ է գրել հայերենի մասին. «Հայոց լեզուն է իմ սիրուս առարկան…, մի լեզու, որ զորություն ունի ազատորեն և ստույգ արտահայտելու գիտական խստորոշ միտքը, փիլիսոփայական գաղափարները և բանաստեղծական ընթրին, բազմերանգ կիսաստվերները միաժամանակ»:

Եթե հայոց լեզուն այսպես կարող են գնահատել ու մեծարել այլազգի մարդիկ, որոնց համար այդ լեզուն ՕՏԱՐ է, ապա որքան ավելի մենք պիտի կարողանանք գնահատել, երբ այդ լեզուն մեր ՀԱՐԱԶԱՏԸՆ է, մայրենին, միակն ու անփոխարինելին:

Մեր այսօրվա այբուբենը նույնն է, ինչ մեկուկես հազարամյակ առաջ, բայց մենք վաղուց արդեն այնպես չենք գրում ու խոսում, ինչպես դարեր առաջ: Այն աշխարհաբարը՝ նոր հայերենը, որով այսօր խոսում ենք, սկսվել է ձևավորվել XVII դարից:

Աշխարհաբարը՝ նոր հայերենը, ձևավորվել է երկու ճյուղով՝ արևելահայերեն և արևմտահայերեն. առաջինն Արևելյան Հայաստանի բարբառների, գլխավորապես Արարատյան բարբառի, երկրորդը՝ Արևմըտյան Հայաստանի բարբառների, և գլխավորապես պոլսահայ բարբառի հիման վրա: Երկուսն էլ մեր այսօրվա հայերենն են իրենց դասական հեղինակներով՝ Աբովյան, Րաֆֆի, Թումանյան, Տերյան, Չարենց, Պեշիկթաշլյան, Դուրյան, Պարոնյան, Մեծարենց, Զոհրապ, Օտյան…

Իհարկե, արևելահայերենն ավելի հարազատ ու մատչելի է արևելահային, արևմտահայերենը՝ արևմտահային, իհարկե, ժամանակակից աշխարհաբարի այդ երկու ճյուղերի միջև կան բառապաշարի, խոնարհման ու հոլովման ձևերի, արտասանության տարբերություններ: Բայց այդ տարբերությունները մեզ չեն խանգարում, որ հասկանանք միմյանց, կարդանք ու հիանանք հիշածս դասականներով: Պետրոս Դուրյանի պոեզիան մեր ականջին

ճնշում է նույնքան դյութական, որքան Վահան Տերյանի պոեզիան։

Լեզուն բոլոր թելերով կապված է ժողովրդի պատմական ճակատագրի հետ։ Արևմտահայերենն Արևմտյան Հայաստանի գավառների և պոլսահայության լեզուն էր։ Երբ կատարվեց մարդկության պատմության մեծագույն ոճիրներից մեկը, որ մեր ազգային տարեգրության մեջ մտավ «մեծ եղեռն» անունով, կոտորածից փրկված հայությունը սփռվեց աշխարհով մեկ, և արևմտահայերենը դարձավ սփյուռքահայության լեզուն։ Այդ լեզվով են սովորում, գրում ու խոսում մեր սփյուռքահայ եղբայրները։ Սփյուռքի գրողներից է արձակագիր Վահրամ Մավյանը, որ հուզումնալից շատ էջեր է նվիրել սփյուռքահայերի կյանքին, հայ մնալու համար նրանց թափած դժվարին ջանքերին ու մաքառմանը։ Գրել է նաև մի գովք մայրենի լեզվին, այնքա՛ն գեղեցիկ ու սրտառուչ, որ արժե դրանով ավարտել մեր այս նախավերջին զրույցը։ Հայրենի եզերքից շատ հեռու, եվրոպական մի քաղաքում ապրելով, օտարություն քաշելով, գրողն այսպես է դիմում մայրենի լեզվին. «Գիտնա՞ս միայն, թե որքան անհրապույր են օրերս առանց քեզի ու ես մինակ, առանց քու ձայնին, ներկայության, երբ կանցնիմ բազմամարդ, հսկա քաղաքներու լուսազարդ, օտար մայթերեն, ուր ոչ ոք, ոչ ոք ծանոթ է քեզի...

Քու ներկայությունդ բավական է, որ մոռնամ աշխարհը ամբողջ ու գովերգեմ քե՛զ, միայն քեզ, որ սիրո սյուք ես ու կանչ կարոտի, հառաչ պլևորի ու ճիչ մանկան. քեզ, որ արևածագին հետ արտերու վրա բացվող հորովել ես լուսաշաղախ ու դարավոր ծառ ծիրանի, քեզ՝ նայիրյան բարտիներու իրիկնային հսկում արարատյան, մեղեդի կապույտ ու պայծառ երկինք բազմաստեղյան. քեզ՝ իմ աննման, համբուրելի լեզո՛ւ մայրենի»։




# ԱՂՈՒՀԱՑԻ ԲՈՒՐՄՈՒՆՔԸ

Երևանի № 109 դպրոցում սովորում են տասից ավելի ազգությունների երեխաներ։ Այստեղ գործում է ինտերնացիոնալ բարեկամության ակումբ (ԻԲԱ), որն անցյալ տարի անցկացված հանրապետական մրցույթում գրավեց առաջին տեղը։ Դպրոցը և ակումբը միաժամանակ են հիմնադրվել՝ 1972-ին։ Ակումբն ունի 500-ից ավելի անդամ։ Ղեկավարը Սեդա Ստեփանյանն է՝ դաստիարակության գծով դիրեկտորի տեղակալ, գերմաներեն լեզվի ուսուցչուհի, գերմանա-սովետական բարեկամության ընկերության Հերդերի անվան մեդալակիր։ Իսկ սովետա-գերմանական բարեկամության ընկերության անդամ է ամբողջ դպրոցը։ Դպրոցի ԻԲԱ-ի պրեզիդենտն է 9-րդ դասարանի աշակերտուհի Նաիրա Երիցյանը, որն անցյալ տարի անցկացված հանրապետական մրցույթում գրավեց առաջին տեղը։

Պիոներսենյակում, որն իր մեծությամբ ավելի շուտ դահլիճ է հիշեցնում, ստեղծված է ժողովուրդների բարեկամության թանգարան։ Այնտեղ ցուցադրված են սեմինարների ժամանակ շահած ոսկե, արծաթե և բրոնզե մեդալներ, Չեբոկսարիից (Չուվաշական ԻՍՍՀ) բերված աղուհացը, սովետաչեխական սահմանի մոտ տեղի ունեցած հանդիպման ժամանակ 6-րդ դասարանցի Էրիկի նվաճած մրցանակը՝ ազգային պարերի կատարման համար, գերմանացի աղջիկների ձեռքով հյուսված սփռոցներ, ճապոներեն գիրք՝ ճապոնացի երեխաների նվերը, լողագրնդակ՝ տարբեր լեզուներով մակագրված՝ խաղաղությո՜ւն, խաղաղությո՜ւն, խաղաղությո՜ւն...

Ո՞վ չէր ուզենա Եպրաքսյայի ու Իրինայի փոխարեն Հայաստանը ներկայացնել սովետա-չեխական սահմանի վրա և ստորագրել «Ո՛չ՝ պատերազմին» փաստաթղթի տակ, մասնակցել փառատոների, գերմանացի երեխաների հետ նամակով շախմատ խաղալ, ամեն տարի լեհ երեխաների հետ նկարներ փոխանակել, բարեկամության թանգարանում ունենալ վրաց երեխաներից նվեր ստացած մեծ Ռուսթավելու «Վագրենավորը», ադրբեջանցի երեխաների պատրաստած եղնիկը, պատվոգրեր, դիպլոմներ, սեփական մատներով ասեղնագործած կտավը, կամ աղավնիների ու թիթեռների պատկերներով դրվագազարդված պղընձե թիթեղը տանել տոնավաճառ և ստացված գումարը փոխանցել խաղաղության և երեխաների պաշտպանության միջազգային ֆոնդերին:

Չուվաշական ԻՍՍՀ կատարած այցը անջնջելի տպավորություն է թողել Հրանտի ու Համլիկի հիշողության մեջ: Նույնպիսի տպավորություններով են նրանք վերադարձել Ուժգորոդից, Մոսկվայից, որտեղ հանդիպել են լիտվացի, էստոնացի, ռումին ու բուլղար երեխաների հետ:

Մարիան ստացված նամակները գրանցում է հատուկ մատյանում: Յուրաքանչյուր երկիր, հանրապետություն, քաղաք իր թղթապանակն ունի: Ակումբի ղեկավար Սեդա Ստեփանյանը օգնում է, ցուցումներ է տալիս:

— Մեր ակումբայինները լավ են աշխատում,— ասում է նա,— Աշխենի, Անուշի, Էդիկի, Զարուհու, Նաիրայի, Բելլայի և մյուսների եռանդի շնորհիվ մեր փոստը օր օրի ծանրաբեռնվում է:

ԻԲԱ-ն ունի էստաֆետ ալբոմ, որը ճանապարհորդում է հանրապետություններով ու կրկին ետ գալիս, շրջում է քաղաքից քաղաք, պատմում տարբեր երկրների երեխաների ամենանվիրական ցանկությունների մասին, որպիսին է խաղաղությունը, որն ունի աղո[illegible] բուրմունք:

«Բարեկամություն» անունն է կրում այդ ալբոմը:

*ՎԱՀԱՆ ԹԱՄԱՐՅԱՆ*

...«Ավտոմոբիլ» տերմինը ծագել է 1769 թվին, առաջին ավտոմոբիլներր երևան գալուց շատ ու շատ առաջ:

Այսպես կոչվեց շոգեշարժիչով ինքնագնաց բեռնատար մեքենան, որի հեղինակն էր ֆրանսիացի մեխանիկ Կանյոն: Մեքենան մոտ երեք տոննա քաշ ուներ, իսկ շարժիչը զարգացնում էր միայն երկու ձիաուժ հզորություն, այնպես որ շարժման արագությունը լավագույն դեպքում ժամում չէր անցնում չորս կիլոմետրից: 1882 թվականին, երկու ռուս ինժեներներ, Պուտիլովը և Խլոբովը բենզինով աշխատող ներքին այրման շարժիչով մեքենա պատրաստեցին, որը նույնպես «ավտոմոբիլ» անվանեցին: Գերմանացի մեխանիկներ Բենցի և Դայմլերի ստեղծած մեքենաները կոչվում էին «մոտորով ձի», «նավթե շարժիչով կառք», «ինքնագնաց մեքենա»: «Ավտոմոբիլ» բառը գործածության մեջ մտավ 1894 թվին, երբ Փարիզ—Ռուան խճուղում կայացավ առաջին միջազգային ավտոմոբիլային մրցարշավը: Ընդ որում, այն ժամանակ նվաճված արագության ռեկորդը ժամում 20 կիլոմետր էր:



# ԱՍՏՂԵՐԻ ՏՈՒՆԸ



Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ

Հանկարծ երկնքով մի ասուպ է սըլանում: Գիշերային երկնքում կարճատև բռնկվում ու անհետանում է նրա լուսավոր հետքը: Ծանոթ ուրվագծերով համաստեղությունների մեջ «թափառում են» մոլորակները: Նորալուսինն օրեցօր աճում, դառնում է լիալուսին, ապա սկսում է «հալվել»: Տարվա եղանակները հաջորդում են իրար և դրա հետ մեկտեղ փոխվում են նաև երկընքում դիտվող համաստեղությունները..

Ինչքա՜ն բան կարելի է տեսնել երկընքում: Եվ ոչ միայն իսկական երկնակամարում: Այդ բոլոր երևույթները իրենց առանձնահատկությունների բավականին ճիշտ վերարտադրությամբ հնարավոր է դիտել նաև երկար ընդմիջումից հետո Երևանում կրկին բացված աստղացուցարանում (պլանետարիումում): Մայրաքաղաքի Կոմիտասի անվան զբոսայգու ամենաժամանակակից սարքավորումներով օժտված այս նոր «աստղատունը» փոխարինեց տարիներ առաջ գործող փոքրիկ աստղացուցարանին: Դահլիճի կամարաձև առաստաղին օպտիկական բարդ սարքավորումների միջոցով պատկերվող երկինքն իսկական երկնքի պատրանք է ստեղծում:

Պատկերը վերարտադրող սարքերը ղեկավարվում են էլեկտրոնային հաշվիչ մեքենայով, որը լավ «գիտե» թե երկնքում ինչպիսի շարժումներ են անում լուսատուները: Նրա հրամանով աստղային երկնքի պատկերը պտտվում է: Դուք ցանկանում եք տեսնել, թե ինչպե՞ս են շարժվում մոլորակները: Ահա, աստղերի մեջ հայտնվում են մոլորակները՝ Մերկուրին, Վեներան, Մարսը, Յուպիտերն ու Սատուրնը... Կարճ ժամանակահատվածում հանդիսատեսը հասցնում է դիտել մոլորակների բարդ շարժումները, որ նրանք կատարում են ամիսների ու տարիների ընթացքում: Կարող եք առանձին տեսնել նաև Յուպիտերն իր չորս ամենախոշոր արբանյակներով:

Ուրիշ շատ ու շատ երևույթներ ևս կարելի է տեսնել աստղացուցարանում, զուգընթաց լսել մասնագետների դասախոսությունները և ընդամենը մեկ, մեկուկես ժամվա ընթացքում մեծ քանակությամբ ինֆորմացիա ստանալ աստղագիտության զարգացման պատմության ու բազմաթիվ երկնային «հըրաշքների» մասին: Իսկ երբ դիտումը մոտենում է ավարտին, և առավոտվա նմանությամբ բացվում է լույսը, թվում է, թե մի ամբողջ գիշեր աստղերի հետ եք զրուցել...

*ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Իրենք իրենց մասին

# Ասպետական վարք ու բարք



Շառլոտա Բրոնտեի «Ջեյն Էյր» գիրքը երբ կարդացի, ինձ այնպե՜ս հուզեց, հերոսուհին այնպե՜ս ինձ գրավեց, որ որոշեցի «օրագիր-ընկերուհի» պահել և այդ «օրագիր-ընկերուհուս» անունը դնել Ջեյն: Ջեյնը դարձել է իմ իդեալը, իմ ամենամոտիկ ընկերուհին: Որևէ քայլ ձեռնարկելիս մտածում եմ՝ Ջեյնն ինչպե՜ս կվարվեր...

Ի՞նչ կզգար, եթե իմ տեղը լիներահա այս դեպքում: Ընկերուհուս՝ Նեկտարի հետ գնացել էինք «Պիոներ» ամսագրի խմբագրություն: Նյութեր էինք տարել: Սակայն նյութերն այնքան էլ հարմար չէին, և մեզ առաջարկեցին փորձել որևէ բան գրել տղաների ասպետության մասին: Այսօր տղաների մեջ ասպետություն կա՞, թե՞ ասպետությունն էլ է վերածվել «անցյալի մնացուկի», այսպիսին էր հարցը:

Տուն էինք վերադառնում: Հասանք գյուղատնտեսական ինստիտուտին: Դիմացից գալիս էին մի խումբ տղաներ՝ ձեռքերը գոտկատեղերին: Երբ հավասարվեցինք, տեղը պնքան նեղ էր, որ կամ մենք պետք է սպասեինք, որ իրենք անցնեին, կամ իրենք: Ասպետության մասին չէ խոսքը, այլ տարրական քաղաքավարության: Նրանք տարված խոսում էին իրենց ընկերոջ նոր ջինսի մասին:

— Աշոտ, ընենց ցենտր ա նստում վրեն, որ տեսնես խելքդ կթռա:

Նրանք այդպես էլ՝ ձեռքերը գոտկատեղերին՝ անցան, փակելով ամբողջ ճանապարհը: Այնպես սեղմվեցինք ծառին, որ ամբողջովին փոշոտվեցինք: Նրանք մեզ չնայեցին էլ: Մի՞թե կարող են այդպիսի լեզվով խոսող տղաները ասպետ լինել, երբ տարրական քաղաքավարությունից զուրկ են: Ասպետություն չենք պահանջում, այլ միայն տարրական քաղաքավարություն:

*ՍՈՒՍԱՆՆԱ ԱՇՐԱՖՅԱՆ*
*№ 134 դպրոց, 10-րդ դասարան*

# ԲԱԶԵԻ ՈՐՍԸ

ՎԻԼՅԱՄ ԿՈԶԼՈՎ

Առաջին անգամ նա մեր բակում հայտնըվեց վաղ գարնանը: Սարյակները դեռ չէին վերադարձել: Կանաչ շալվարով ու կանացի կոֆտա հիշեցնող դարչնագույն գործովի վերնազգեստով, մի տեսակ ծիծաղելի, սուսիկ-փուսիկ տղա էր: Ասենք կոֆտան էլի ոչինչ, բայց պիտի ինքն էլ էր աղջկա նման. երկար թարթիչներ, խոշոր կապույտ աչքեր, հասած արևածաղկի նման դեղին մազեր ու փոքրիկ կանոնավոր քիթ: Ամեն մի չնչին բանից աչքերը գետնին էր հառում ու այնպես էր կարմրում, որ ականջներն այրվում էին: Ձայնն էլ էր աղջկա ձայնի պես բարակ: Նա երբեք բարձրաձայն չէր խոսում: Երևի այդ պատճառով էլ մեր բակի տղաները հաճախ ընդհատում, մինչև վերջ չէին լսում նրան ու իրենցն էին ասում: Սլավան, այդպես էր տղայի անունը, չէր նեղանում, աչքերը ճպճպացնում էր և իսկույն լռում: Ինքն ուրիշների խոսքը երբեք չէր կտրում:

Իհարկե, մեզ այն ժամանակ զարմացնողը ո՛չ կանաչ շալվարն ու գործովի կոֆտան էին, ո՛չ էլ նույնիսկ աղջկա աչքերի նման կապույտ աչքերը, այլ բոլորովին ուրիշ բան. անծանոթ տղայի ուսին նստած էր չալպտուրիկ, կանաչ երանգով մի բազե: Դեղնավուն մագիլներով ճանկերը միրճած տղայի բրդյա կոֆտայի մեջ, կլոր մուգ աչքերով աներկյուղ մեզ էր նայում: Գիշատիչ կեռ կտուցը տարուբերվում էր տղայի աչքերին շատ մոտիկ:

Լենինգրադում* հո հաճախ չես տեսնի տղայի ուսին նստած իսկական, կենդանի բազե: Մենք վայրկենապես մոռացանք մեր բոլոր խաղերը, շրջապատեցինք ու, բերաններս զարմանքից բաց, նայեցինք նրան: Ճիշտն ասած մենք իսկի չգիտեինք էլ, թե դա ինչ թռչուն է՝ բազե՞ է, արծի՞վ, թե՞ ուրուր: Մի բան պարզ էր, որ գիշատիչ է:

Նույնիսկ երբ տղան քաղաքավարի «բարև ձեզ» ասաց, ոչ ոք նրան չպատասխանեց: Այդ ժամանակ մենք իրար չէինք նայում, հայացքո՛վ ուտում էինք սուր, կեռ կտուցով գիշատչին և զարմանում, թե ինչու է հանգիստ նստել տղայի ուսին ու չի թռչում: Մեկ թե երկու անգամ նա իր հրսկայական թևերը տարածեց ու նորից ծալեց:

Տղան ժպտաց, այդ ժպիտն էլ էր պայծառ, աղջկական, ու ասաց, որ ուսին նըստած թռչունը իսկական բազե է: Նա վարժեցված է ու կարող է թռչուններ բռնել, ինչպես հնում էին փետրավորների որս անում: Այդ որսը կոչվում է բազեի որս: Այժմ նման որս գրեթե ոչ ոք չի անում: Գուցե միայն ասիական տափաստաններում: Եվ այն էլ ոչ թե բազեով, այլ քարարծվով: Քարարծիվը հսկայական արծիվ է, նա կարող է նույնիսկ աղվեսին տապալել, իսկ նապաստակին բռնելն ու օդ բարձրացնելը նրա համար հասարակ բան է:

Եվ այդ ժամանակ մենք բոլորս միաբերան վրա տվինք.

— Ի՞նչ է սրա անունը:





— Որտե՞ղից ես սրան ձեռք բերել:
— Սա կռիվ չի՞ անում:
— Ի՞նչ է ուտում:
Եվ էլի շատ ու շատ հարցեր տվինք բազեի մասին:
Տղան ուշադիր լսեց բոլորիս, ժպտաց և խնդրելով ճանապարհ տալ իրեն, արահետով քայլեց դեպի կեչիների անտառը, որ երևում էր շինարարական հրապարակից այն կողմ: Մենք ապրում էինք քաղաքի ծայրամասում, նոր միկրոշրջանում: Կեչիների անտառը շատ մոտ էր նոր շենքին, իսկ դրանից դենը քաղաքամերձ սովխոզի բանջարանոցի լայնարձակ դաշտն էր, դաշտից դենը՝ երկաթգծի մի ճյուղը: Երկաթգծով էլեկտրագնացքներ էին սլանում: Ընկըզբում լսվում էր երկարաձիգ խուլ սուլոց, հետո գնալով մեծանում էր մետաղի դղրդյունը և, վերջապես, սպիտակ կեչիների արանքներից արագ երևում ու աներևութանում էին շողշողուն լուսամուտներով կանաչ երկար վագոնները:
Մենք ապշած նայում էինք տղայի ետևից: Ինչու՞ նա մեզ ոչինչ չպատասխանեց: Լենա Բոլդիրևան և տղաներից մի քանիսը ուզեցին գնալ տղայի ետևից, բայց Վովա Լոգինովը, որ մեր մեջ ամենամեծն էր, արհամարհանքով ասաց.
— Փետրավոր գիշատիչ չե՞ք տեսել: Գնացեք կենդանաբանական այգի, այնտեղ հենց դրա նմանը կտեսնեք... քարարծիվ էլ կա, մերկապարանոց անգղ էլ...
Կենդանաբանական այգում վանդակի մեջ տանջվող թռչունը մի բան է, վարժեցրած բազեն, որին կարող ես ձեռք տալ, իհարկե, եթե նա չի կտցահարում՝ բոլորովին այլ բան: Բայց Լենան ու մյուսները անվճռական կանգ առան, առաջ չգնացին:
— Գուցե նրա հայրը կրկեսու՞մ է աշխատում,— հարցրեց Լյովա Ծիխովը:
— Նրանք երեկ չէ առաջին օրն են եկել,— հայտնեց Վովկան:— Ես տեսա, որ երրորդ մուտքի մոտ մեքենան դատարկում էին:
— Գուցե նրանք վարժեցրած փի՞ղ էլ ունեն,— սրամտեց Լյովան,— կամ էլ վագր:
— Վագր չեմ տեսել,— ընդհատեց Վովկան:— Իսկ, ա՜յ, պահարանը, որ հազիվ էին վեր բարձրացնում, տեսել եմ:
— Հենց այդ պահարանում էլ նրանց կենդանաբանական այգին է,— ձեռ չէր քաշում Լյովան:
— Գնա հարցրու այդ... որսորդին,— գլխով տղայի կողմը ցույց տվեց Վովկան:
— Չափազանց հնազանդ է նրա այդ բազեն:
— Տեսե՛ք, տեսե՛ք, թռա՜վ,— բացականչեց խոշորաչք Լենան:— Ոնց որ ուղղաթիռ լինի, իսկույն վեր սլացավ:
Ու մենք տեսանք, թե ինչպես բազեն չալպտուրիկ թևերն արագ-արագ թափահարելով դեպի վեր, դեպի կապուտակ երկինք էր սլանում: Հետո ամպերի ետևից դուրս եկավ արևը և բազեն փոշեհատիկի նման լուծվեց նրա շլացնող ճառագայթներում:
Վովկա Լոգինովն ինչ-որ տեղից կապտավուն աղավնի էր ճարել և, նրա թաթին մի թել կապած, սովորեցնում էր ուսին նստել: Բայց աղավնին անհասկացող էր և հա ուզում էր թռչել: Նա աղմուկով թափահարում էր թևերը, հարվածելով Վովկայի ականջին, չարչարվում էր, որ վերև թռչի, բայց թելը ձգվում էր, և թռչունը, թպրտալով, գետին էր տապալվում: Վովկան զայրանում էր, կապտավուն աղավնուն նստեցնում էր ուսին, բայց ամեն ինչ կրկնվում էր նորից: Նրա ոտքը ուռել էր, ճանկերը՝ չովել, և թռչունը սկսել էր կաղալ:
Մենք հետևում էինք Լոգինովի ձեռնածություններին: Խղճում էինք աղավնուն, բայց Վովկային բան հասկացնել չէր լինի: Մի բան, որ գլուխը մտավ, էլ ոչ մեկի չէր լսի: Հաստաշուրթ, լայնադեմ, կարճ խուզած մազերով, կլոր գլխով այդ տղան լուռ կռիվ էր տալիս ուժահատ աղավնու հետ:
— Ինչու՞ ես դրան տանջում,— հարցրեց Լենան:— Բազեն թռչուններ է բռնում, իսկ քո աղավնին ի՞նչ է բռնելու:
— Մկներ,— վրա բերեց Լյովան:
— Աղավնին խաղաղ թռչուն է,— ասաց Լենան,— նա ոչ մեկին չի բռնում: Նկարներում տեսե՞լ եք, աղավնուն նկարում են ճյուղը կտցին:
— Ճյուղը...— ծիծաղեցի ես:— Ձիթենու՛ ճյուղը: Ձիթենու ճյուղը կտցին աղավնին խաղաղության խորհրդանիշն է երկրի վրա: Իմ հայրը նկարիչ է, նա շատ է նկարել աղավնիներ՝ ձիթենու ճյուղը կտուցներին: Պլակատին նկարված նման մի աղավնի ես տարել եմ մայիսմեկյան շքերթի:
— Եվ ինչու՞ են դրանց նկարում նկարիչները,— արհամարհանքով նայելով աղավնուն, փնթփնթաց Վովկան:— Հիմար թռչուն է: Ոչինչ անել չգիտի: Հենց մի

գլուխ մարդկանց ոտքերի տակ է ընկնում:
Վովկան աղավնուն նորից նստեցրեց ուսին, բայց հենց որ ձեռքը բաց թողեց, նա իսկույն ձգեց թեւը և, այս էլ որերորդ անգամ, թևերն անմտորեն թափահարե-լով, կողքանց վայրէջք կատարեց ասֆալ-տապատ ճանապարհին:
Այդ պահին երրորդ մուտքից դուրս ե-կավ կանաչ շալվարով ու գործովի կոֆ-տայով տղան: Բազեն ոնց որ կարված լիներ նրա ուսին: Քայլերին համընթաց նա վեր ցցած գլուխը մերթ մի, մերթ մյուս կողմն էր թեքում: Պուտպուտուրիկ փետուրները շողշողում էին, կլոր սուր աչքերը փայլում: Վովկային ու աղավնուն մոռացած, մենք շրջապատեցինք տղային: Լենան վախվխե-լով ձեռքը երկարեց բազեին:
— Չի՞ կծի,— հարցրեց նա:
— Կկծի,— քմծիծաղ տվեց Լյովան:— Սա թռչուն է, ոչ թե վագր:
Իսկ ինքը, այնուամենայնիվ, մի կողմ էր քաշվել, չէր մոտենում բազեին:
— Ծոյի՛ր,— թույլ տվեց տղան:
Լենան զգուշորեն ձեռք տվեց գիշատչի փայփլուն փետուրներին: Բազեն նույնիսկ նրա կողմը չնայեց: Ոսկեգույն շրջանակով նրա գորշ աչքերը հառած էին հեռուն՝ երե-խաների գլուխներից վեր: Նա երկինք չէր նայում, միայն առաջ, ուղիղ իր դիմաց:
Ես էլ ձեռք տվի բազեին, նա ինձ վրա էլ ուշադրություն չդարձրեց: Գեղեցիկ բա-զեի համար մենք կարծես գոյություն չու-նեինք: Նա մեզ չէր նկատում: Տեսքն էլ հպարտ ու անմատչելի էր: Ոչ թե Վովկայի աղավնու նման, որ ետևից թևը քարշ տա-լով, կաղեկաղ շարժվում էր ասֆալտապատ ճանապարհին: Բազեն ինկի չնայեց էլ ա-ղավնուն:
— Քո բազեն որս անել գիտի՞,— մեզ մոտեցավ Վովկան: Աղավնուն կապած թե-լի ծայրը նա պահել էր ձեռքին:
— Ջանը հիանալի որսորդ է,— ասաց Սլավան:
— Իսկ դու նրա հետ ի՞նչ ես որսում,— հարցրեց Լենան:
— Ես որս անել չեմ սիրում,— պատաս-խանեց նա:
— Բա ինչու՞ ես հետն անտառ գնում,— հետաքրքրվեցի ես:
— Ջանին հարկավոր է թռչել:
— Իսկ նա ի՞նչ է ուտում,— հարցրեց Վովկան:
— Հում միս:
— Իսկ թռչուն ուտու՞մ է,— նորից հարց-րեց Վովկան:
— Մենք երեք տարի ապրել ենք Միջին Ասիայում,— ասաց Սլավկան:— Ջանը քա-րակաքավների որս էր անում:
— Քարակաքա՞վ,— զարմացավ Լենան:
— Իսկ դա ի՞նչ բան է:
— Լեռնային կաքավ է,— ժպտաց Սլա-վան:
— Սա ինչու՞ չի նայում իմ ճարպակա-լած աղավնուն,— հարցրեց Վովկան, մոտ քաշելով աղավնուն:
— Բազեն չի տեսնում նրան,— նկատեց Լյովան:
Վովկան վերցրեց աղավնուն ու մոտեց-րեց բազեի կտուցին: Սա, աչքերը փայլեց-նելով, գլուխը շուռ տվեց ու փետուրները տնկեց:
— Սա ոչ մի որսորդ էլ չի,— ծիծաղեց Վովկան:— Տեսե՛ք, տեսե՛ք, ոնց է վախե-նում իմ աղավնուց:
— Ջանը ոչ մեկից չի վախենում,— հանգիստ պատասխանեց Սլավան:
— Բա ինչու՞ սրան չի ուտում:
— Ես որս չեմ սիրում,— կրկնեց Սլա-վան: Նրա կապույտ աղջկական աչքերը դարձան թախծոտ:
— Դու չես սիրում,— ծիծաղեց զվար-ճասեր Լյովան:— Իսկ դա,— Լյովան գըլ-խով ցույց տվեց բազեին,— սիրու՞մ է:
— Ջանի համար այստեղ տխուր է,— հո-գոց հանեց Սլավան:— Սա ի՞նչ երկինք է: Ծաբաթներով արև չի երևում, իսկ Միջին Ասիայում գրեթե կլոր տարին արև կա: Եր-կինքն էլ բոլորովին ուրիշ է:
— Ուրի՞շ է,— նրան նայեց Լենան:
— Այնտեղ շոգ է,— նկատեց Լյովան,— Սահարա անապատն է:
— Ցերեկը շոգ է, իսկ երեկոյան լավ...— շարունակեց Սլավան:— Հենց որ արևը սպիտակ լեռների ետևն է անցնում, իս-կույն զովանում է: Եվ իսկույն էլ վրա է հասնում գիշերը, իսկ աստղերը մեծ են ու վառ: Այստեղ այդպիսի աստղեր չեն լինում:
— Այնտեղ ուղտեր կա՞ն, ճիշտ է, որ նրանք թքում են:
— Ուղտերը լեռներում չեն ապրում,— ասաց Սլավան:— Ծատ էշեր կան: Դրանց սոխ ու ձմերուկ են բարձում այնքան, որ էշը տակին չի երևում... Փոքր են, բայց ուժեղ են:
— Դու էշ նստե՞լ ես,— հետաքրքրվեցի

ես:— Երբեք էշ չեմ տեսել: Միայն նկարներում եմ տեսել:
— Էշ էլ եմ նստել, ուղտ էլ...— պատասխանեց Սլավան:
— Իսկ շնագայլ տեսե՞լ ես,— խայթեց Լյովա Ծախովը:
— Շնագայլ չեմ տեսել,— հանգիստ պատասխանեց Սլավան:
— Իսկ Ջանի հետ ո՞վ էր որսի գնում,— հարցրեց Վովկան:
— Իմ ընկեր Ֆարիդը,— ասաց Սլավան, — նա էլ ինձ նվիրել է Ջանին, երբ մենք մեկնում էինք:
Վովկան նորից բազեի կտուցին մոտեցրեց աղավնուն: Ջանի գլուխը ոնց որ պտուտակի վրա, հակառակ կողմը շուռ եկավ:
— Սուտ ես ասում,— ասաց Վովկան:— Քո Ջանը որսորդ չի:
— Բազեն ազնվացեղ թռչուն է,— մեղմ ձայնով ասաց Սլավան:— Գետնի վրա նա ոչ մեկին ձեռք չի տալիս: Ջոհին նա խփում է միայն թռիչքի ժամանակ:— Նա շուռ եկավ ու քայլեց կեչիների անտառի կողմը: Ջանը թևերը թեթևակի բացած՝ օրորվում էր նրա ուսին:
Գրեթե մի շաբաթ չէր կտրվում լենինգրադյան հոգեմաշ անձրևը: Երկինքը ցածր, քրքրված, ջրի բարակ շիթերը վազում են ապակիների վրայով, ջրհորդանները բչքչում են, լուսամուտների տակ մետաղյա քիվերը երգում: Իսկ բանվորները անձրևի տակ էլ տուն են կառուցում: Այդ ընթացքում երկու հարկ էլ կանգնեցրին: Կեչիների անտառը ասես դեղին ծխով էր պարուրվել: Հայտնվել էին բողբոջները ու առաջին տերևները: Անձրևին բակում բան չկար անելու, այդպիսի եղանակին ավելի լավ է դասերից հետո տանը նստել, հեռուստացույցով մուլտիպլիկացիոն ֆիլմեր ու սպորտային հաղորդումներ նայել: Կարելի է հետաքրքիր գիրք կարդալ, անձրևի մասին էլ կմոռանաս:
Այս խոնավ, անձրևային օրերից մի օր ինձ մոտ եկավ Վովկա Լոգինովը: Նրա ջինսի փողքերը թաց ու ցեխակոլոլ էին, կլոր գլխին ցցվել էին դարչնագույն թաց մազերը: Քիթն ու այտերը թաց էին: Իմանալով, որ իմ տատը անկարգությունն չի սիրում, Վովկան երկար-բարակ ոտքերը քսում էր հին գորգին, ձեռքի ափով սղալում թաց մազերը, բայց տատիկս նրա վրա ուշադրություն չէր դարձնում: Նա խոհանոցում կարկանդակներ էր տապակում: Ախորժաբեր հոտը բռնել էր ողջ բնակարանը:
— Մի տաք-տաք մսով կարկանդակ լինեն,— ասաց Վովկան, շրթունքները լիզելով ու հոտոտելով օդը: Նա գիտեր, որ իմ տատը մսով կարկանդակներ պատրաստելու վարպետ է:
Խոհանոցից բերի երկու լավ տապակած կարկանդակ և ես ու Վովկան հաճույքով կերանք:
— Չե՞ս տեսել այդ... Սլավկային ու Ջանին,— հարցրեց Վովկան: Յուղոտ ձեռքերը քսեց ջինսին, թեպետ թղթե անձեռոցիկ էի բերել:
— Նա կարոտում է իր միջինասիական երկնքին ու էշերին,— ասացի ես:— Ջանն էլ է կարոտում:
— Ուղտերին էլ,— ավելացրեց Վովկան:
— Արևին,— հոգոց հանեցի ես: Արևին ես էլ էի կարոտում: Երկնքում արև լինեն, տանը նստած չէի լինի...
— Ռադիոյով հաղորդեցին, որ վաղը լավ եղանակ է լինելու,— ասաց Վովկան:
— Կարող են սխալվել:
— Ինչքա՞ն կարող է անձրև թափվել, — բարկացած լուսամուտին նայեց Վովկան:— Համաշխարհային ջրհեղեղ է... Բակի ջրափոսում կարելի է լողանալ:
— Լողացե՞լ ես:
— Չէ,— ասաց Վովկան:— Ա՛յ, կտեսնես անձրևը կդադարի:
— Աղավնուն բաց ես թողե՞լ,— քիչ լռելուց հետո հետաքրքրվեցի ես:
— Տես ի՛նչ եմ մտածել...— աշխուժացավ Վովկան: Եկեք վաղը ո՛րս կազմակերպենք:
— Սլավկան որս չի սիրում:
Սլավային համոզել չհաջողվեց: Նա կտրականապես հրաժարվեց մեզ ցույց տալ բազեի որսը: Ջուր էր Վովկան չարչարվում, նույնիսկ խոստացավ թույլ տալ իր մոպեդով զբոսնել: Վովկան սովորաբար ոչ մեկին չէր վստահում իր մոպեդը: Մենք արդեն չէինք էլ խնդրում, որ թույլ տա քշել մեքենան, գիտեինք, որ իզուր է:
— Լենինգրադում քիչ թռչուն կա,— ասաց Սլավան:— Ես չեմ ուզում, որ Ջանը սպանի նրանց:
— Իմ աղավնուն վեր կնետենք,— առաջարկեց Վովկան:— Մեկ է, նրա վրա հույս չի մնացել: Սպասելու բան չի:
— Դու նրան տանջեցիր,— ասաց Լենան.
Վերջապես արևը փայլեց մաքուր լվաց-

ված կապույտ երկնքում, և մեր շենքի երեխաները կամաց-կամաց հավաքվեցին բակում: Ավտոտնակների մոտ փայլփլում էին մեծ ջրափոսերը: Նոր տնկած ջահել բարդիները նուրբ կանաչով էին պատվել, ճամփեզրին թափված ապակու կտորտանքները արևաշողք էին գցում աչքերիս:

— Քաղաքը լիքը աղավնի է,— ասաց Վովկան:— Մեծ բա՜ն է, մի հատ ավելի, մի հատ պակաս...

— Անցյալ տարի դու պարսատիկով կատվին խփեցիր,— մտաքերեց Լենան:

— Հո չսատկեց,— մռայլ նրան նայեց Վովկան:— Կատուները դիմացկուն արարածներ են:

— Ես գնացի,— ասաց Սլավան ու քայլեց անտառի կողմը:

— Կարելի՞ է ես էլ գամ քեզ հետ, — խնդրեց Լենան:

Սլավան գլխով արեց:

Մենք էլ էինք ուզում տեսնել, թե ինչպես պիտի թռչի Ջանը, բայց հպարտությունը խանգարեց: Մեզ չհրավիրեցին, իսկ երեսի զոռով ուղեկցող դառնալ չէինք ուզում:

— Թռչուններից է խղճում,— արհամարհանքով ժպտաց Վովկան:— Որ խղճար բնակարանում չէր պահի հպարտ, ազատասեր բազեին: Ջանին հարկավոր է ազատ տարածություն, երկինք, որս, իսկ նա շաբաթը մի անգամ կես ժամով է թռչել թողնում դրան: Եվ այն էլ այն ժամանակ, երբ թռչուններ չեն երևում:

— Ես մի գրքում կարդացել եմ, որ բազեների գլխին թասակ են դնում,— ասաց Լյովան:— Դա ինչի՞ համար է:

— Ի՞նչ թասակ,— զարմացա ես:

— Կաշվից, որ աչքերը չտեսնեն,— բացատրեց Լյովան:

Վովկան լռեց, նա էլ չգիտեր, թե որսորդ թռչունների գլխին ինչու են կաշվե թասակ դնում:

— Երևի, որ ուշադրությունը չցրվի,— ենթադրեց Լյովան,— երբ վերև են նետում, թասակը հանում են:

Մենք տեսանք, թե ինչպես Սլավան վեր նետեց Ջանին և բազեն խայտաբղետ արկի պես երկինք սլացավ: Ռեակտիվ ինքնաթիռի նման, նա ավելի ու ավելի բարձր էր թռչում: Շուտով մեր աչքից կորավ: Բայց տեսնում էինք, թե կեչուտի բացատում ինչպես են աչխույժ զրույցի բռնվել Սլավան ու Լենան: Աղջկա աչքերը փայլում էին, նա նույնիսկ բռնել էր Սլավայի ձեռքը:

— Դրա վզակոթին չհասցնե՞նք,— առաջարկեց Վովկան: Նրան դուր չէր եկել, որ Լենան գնացել է Սլավայի հետ: Առավել ևս դուր չէր գալիս, որ նա այդպես ուրախ զրույց է անում տղայի հետ: Մենք գիտեինք, որ Լենան վաղուց է դուր գալիս Վովկային: Ճիշտն ասած նա մեզ բոլորիս էլ դուր էր գալիս: Լենան բարալիկ ու երկայնահասակ էր, խիտ շագանակագույն մազեր ուներ, խոշոր, պայծառ աչքեր, որոնք կայծկլտում էին, երբ նա ժպտում էր: Լենան սովորում էր երաժշտական դպրոցում և երբեմն մեզնից մեկնումեկը քաշ էր տալիս նրա երկար ու սև պատյանով ջութակը: Պատյանը քարշ էինք տալիս, բայց Լենայի նվագը մեզնից ոչ մեկը չէր լսել:

— Մենամարտի՛ հրավիրիր նրան, — խնդմնդաց Լյովան:

— Ափսոսում է մարդկանց ցույց տալ, թե ինչպես է բազեն թռչուններ որսում, — ասաց Վովկան:

— Մեղք են թռչունները,— նկատեցի ես: — Ա՜յ, եթե բազեին բաց թողնեինք ագռավի վրա:

— Ագռավն էլ է թռչուն,— ծիծաղեց Լյովան:

— Ես մի բա՜ն եմ մտածել,— բացականչեց Վովկան: — Վաղը մենք բազեի որս կտեսնենք:

Մենք տեսանք, ինչպես Սլավան Ջանին ուսին դրած, դուրս եկավ երրորդ մուտքից ու գնաց դեպի կեչու անտառը: Նրա շեկ մազերը փայլում էին արևի տակ: Այնտեղ, ուր վերջանում էր ասֆալտը, սկսվում էր խոտածածկ արահետը, որի եզրերին վառ դեղին խատուտիկներ էին աճում: Դրանց վրա նստում էին մեղուները ու կրետները: Սարյակները նոր բըներ էին զրաղեցրել այն կեչիների վրա, որոնք ավելի մոտ էին մեր տանը: Դրանք մենք դպրոցում էինք շինել ու հարմարեցրել այստեղ:

Երբ Սլավան թեքվեց դեպի արահետը, առաջին մուտքից դուրս վազեց Լենան: Ոչ մեկին այնտեղ չտեսնելով, նա վազեց տղայի ետևից: Շագանակագույն երկար մազերը փռվել էին ուսերին:

— Սլավա՜,— գոռաց նա: — Սպասի՛ր:

Տղան կանգ առավ: Բազեն նրա ուսին շարժվեց, թևերը թափահարեց ու նորից

անշարժացավ: Ծնչակտուր աղջիկը վազեց և բազեին մեկնեց մի կտոր միս: Թռչունն այդ հյուրասիրությանը չնայեց էլ:

— Նա օտարներից ոչինչ չի վերցնում,— ասաց Սլավան:

— Ինքդ տուր:

Սլավան բացասաբար տարուբերեց գլուխը:

— Թարմ միս է, հենց նոր եմ սառնարանից հանել:

— Նա կուշտ է,— ասաց Սլավան:

Լենան բաց արեց ձեռքի ափն ու միսն ընկավ գետնին: Դրա վրա իսկույն հարձակվեց մի մեծ կանաչ ճանճ:

— Օտա՛ր...— տխուր արտասանեց աղջիկը:

— Զանը միայն ինձ է ճանաչում,— ասաց Սլավան: — Մեկ էլ Ֆարիդին, բայց Ֆարիդը հեռու է...

Մենք շունչներս պահեցինք. նրանք կանգնած էին մեզնից մի տասը մետր այն կողմ: Զանի նրբագեղ գլխի վրա ես նույնիսկ մի մուգ բիծ նկատեցի, որ գույնով տարբերվում էր մյուսներից: Մենք թաքնըվել էինք մի ջարդված բեռնատարի խըցիկի ետևում, որն այստեղ ընկած էր, հավանաբար, դեռ այն ժամանակներից, երբ մեր շենքն էլ չկար: Մեր գլխավերևում շրջում էին կեչիները: Արևով ողողված ջահել տերևներն ասես գոլորշի էին արձակում: Խոնավ հողի ու կաղամախու թունդ հոտ էր գալիս: Վովկան կամացուկ վեր կացավ գետնից և, աղավնուն աջ ձեռքում սեղմած, թաքնվեց կեչու ետևում:

Սլավան բազեին իջեցրեց ուսից, նայեց նրա չթարթող աչքերին և, ձեռքը բարձրացնելով, վեր նետեց նրան: Նույն վայրկյանին Վովկան դուրս թռավ կեչու բնի ետևից ու դեպի երկինք շպրտեց կապտավուն աղավնուն:

Բազեն ուղիղ գծով սուրում էր դեպի կապույտ անհունը, խենթացած աղավնին ասես հետապնդում էր նրան: Նա էլ էր թափով վեր սլանում, բայց նրանը բազեի սլացքի գեղեցկությունը չուներ:

— Ինչո՞ւ արիր այդ,— Սլավան նայեց Վովկային: Նրա աչքերի կապույտ գույնը բացվել, գրեթե երկնագույն էր դարձել: Երկար թարթիչները դողդողում էին: Չնայած Սլավան այդ բառերն արտաբերեց ցածրաձայն, բայց մենք հասկացանք, որ նա զայրույթից եփ էր գալիս:

Այլևս թաքնվելու հարկ չկար, և ես ու



Լյովան նույնպես դուրս եկանք բեռնատարի ետևից:

— Դո՞ւք էլ եք սրա հետ,— մեզ վրա նայեց Սլավան: Չգիտեմ Լյովան ինչպես, բայց ես անհարմար զգացի:

— Գողերի նման թաքնվել են,— ասաց Լենան:

Մենք լռում էինք: Մենք բան չունեինք ասելու: Նույնիսկ սրամիտ Լյովան ասելու բան չուներ: Միայն Վովկան էր, որ ոչ մեկի վրա ուշադրություն չէր դարձնում. նա գլուխը տնկած, աչքերն ագահաբար հառել էր թռչունների վրա: Նույնիսկ բերանը բաց էր մնացել, որից հիմարավուն տեսք էր ստացել:

— Նայեցե՜ք,— դուրս թռավ Վովկայի բերանից,— հիմա կհարվածի:

Լռություն տիրեց: Այժմ բոլորը երկինք էին նայում: Իսկ այնտեղ ողբերգություն էր կատարվում: Պոկվելով աղավնուց, բազեն ինչ-որ ակնթարթ լուսավոր կետի նման կախվեց նրա վրա: Հետո թևերը ծալած, քարի նման վայր ընկավ: Մենք տեսանք, թե ինչպես Ջանը թեթևակի հարվածեց աղավնուն, փոքրիկ փետուրները ծխի նման պտույտ եկան նրանց շուրջը: Բազեն ավարի հետ միասին վայր էր ընկնում: Բայց դա միայն թվում էր: Անկումն այնքան սրընթաց չէր, որքան գռոհը: Բարձրասլաց կեչիների վերևում Ջանը թևերը լայն տարածած կտրուկ կասեցրեց իր անկումը և սահուն վայրէջք կատարեց տղայի մոտ: Մեռած աղավնուն սեղմել էր մագիլների մեջ: Սլավան վերցրեց արյունաթաթախ աղավնուն, տարավ բեռնատարի մոտ և, ծնկի գալով, թաղեց անցյալ տարվա չոր տերևակույտի մեջ: Իսկ ձեռքերը սրբեց կեչու սպիտակ բնին քսելով: Նա մեզ չէր նայում:

— Ո՜նց էր բազեն նրան...— ասաց Լենան, ասես քնից արթնանալով: — Ոնց որ կայծակ լիներ:

— Դուք տեսաք բազեի իսկական որս,— ծպտաց Վովկան:— Ես ասում էի չէ՞, որ հետաքրքիր կլինի:

Երբ Սլավան մոտեցավ մեզ, Ջանը արդեն նորից նստել էր նրա ուսին:

— Մի՞թե դա որս էր,— ասաց Սլավան: — Դա սպանություն էր: Բազեի իսկական որսը բոլորովին այլ բան է:

Սլավայի դեմքը հանգիստ էր, բայց նրա բաց գույնի փոխված աչքերում ինչ-որ բան էր թաքնված:

— Ցույց տուր բազեի իսկական որս,— ասաց Վովկան:

— Մենք չենք տեսել,— վրա բերեց Լյովան:

Ես լռում էի: Ես չգիտեի, ուզո՞ւմ եմ բազեի որս տեսնել, թե՞ ոչ:

— Պետք չէ, Սլա՜վա,— ասաց Լենան: — Ջանը գիշատիչ է, նա պետք է սպանի թռչուններին, բայց դրան նայելը... լավ չէ:

Սլավան ուսից իջեցրեց Ջանին, երկար նայեց նրա կլոր, համարձակ աչքերին, հետո ցածրաձայն ասաց.

— Գնաս բարո՜վ, Ջա՜ն:

Վեր նետեց նրան, թիկունքը մեզ արեց և, առանց ետ նայելու, քայլեց տան կողմը:

Բազեն չեշտակի, գալարաձև վեր սուրաց: Հանկարծ նա փոխեց թռիչքի ուղղությունը, սրընթաց անցավ մեր գլխավերևով և նորից վեր սուրաց: Սլավան երկինք չէր նայում, նա արահետով դանդաղ քայլում էր դեպի մեր մոխրագույն բարձր շենքը: Արահետը վերջացավ, և նա ուռք դրեց ասֆալտին: Այդ պահին Ջանը կըրկին վայր սուրաց և կասեցրեց սլացքը տղայի գլխավերևում, բայց Սլավան կանգ չառավ: Եվ այդ ժամանակ բազեն թևերը արևի տակ փայլեցնելով, վեր սլացավ: Ոչ թե շրջանաձև, ինչպես սովորաբար անում են մյուս թռչունները դեպի վեր թռչելիս, այլ ուղղաձիգ:

— Հիմա նա ո՞ւր է գնում,— ոչ մեկին չդիմելով հարցրեց Լենան: Նա շփոթված նայում էր Սլավայի ետևից:

— Ո՞վ,— հարցրեց Լյովան:

— Ջանը,— ասաց Լենան:

— Միշին Ասիա,— ասաց Լյովան:

— Այդպիսի թռչունը բա՜ց թողեց,— գլուխը օրորեց Վովկան: — Ես Ջանից երբեք չէի բաժանվի:

— Դու՝ դու ես,— ասաց Լենան: — Իսկ նա՝ նա է:

— Նա ուղտեր է տեսել,— քթի տակ ծիծաղեց Վովկան:

— Իվ էշով զբոսնել է,— վրա բերեց Լյովան:

Ոչ ոք չծիծաղեց: Չգիտեմ ինչու, դա ծիծաղելի չէր:

Դուռը խուլ շրխկաց: Սլավան էր, մտավ երրորդ շքամուտքը:

*Թարգմ. Ս. ԱՅՈՒՆՑԻ*

# Հայաստանի պարի պետական անսամբլը

«Բեմի վրա ասես մի ամբողջ ժողովուրդ է պարում»— այսպես է ասել աշխարհահռչակ բալետմեյստեր Ջորջ Բալանչին Հայաստանի պարի պետական անսամբլի ելույթը դիտելուց հետո:

1958 թվականի աշնանը ծնունդ առավ հայ պարարվեստի մայր կոլեկտիվը՝ Հայաստանի պարի պետական անսամբլը:

Համերգացանկի թարմությունը, պարային համարների յուրօրինակ մեկնաբանումը, հին պարերի վերադարձը և պրոֆեսիոնալ բարձր կատարումը շուտով անսամբլի հռչակը տարածեց հանրապետության սահմաններից դուրս: Իսկ 1961 թվականից սկսած անսամբլը մեկնեց համերգային շրջագայությունների ԱՄՆ, Կանադա, Ֆրանսիա, Լատինական Ամերիկայի և Արաբական Արևելքի երկրներ, Չեխոսլովակիա ու Լեհաստան...

Անսամբլը Հայաստանի լենինյան կոմերիտմիության դափնեկիր է, դափնեկիր դարձավ նաև Հելսինկիի ուսանողության և երիտասարդության համաշխարհային 8-րդ փառատոնում: Վերջերս էլ արժանացավ վաստակավոր կոլեկտիվի պատվավոր կոչման:

Գրավիչ են մանավանդ, անսամբլի՝ մեր ժողովրդի պատմությունը խորհրդանշող պարերը՝ տղամարդկանց «Բերդը» և «Սարդարապատը»: Հանդիսավոր, խրոխտ ռազմաշունչ ու կոփածո շարքերով գալիս բեմը նվաճելով, ժողովրդի անսասանության պատկեր է ստեղծում տղաների խումբը:

Գեղջկական կյանքի պատկեր է ներկայացնում «Հոտաղների պարը», որ լեցուն է գեղջուկ տղաների աշխուժությամբ, հումորով, սրամիտ ու խաղական պարային շարժումներով:

Թիֆլիսյան կյանքի վառ կոլորիտ է ցուցադրում «Կինտոների պարը»:

Անսամբլի կանացի խմբապարերի մեջ հմայիչ են «Կակաչները», «Կըռունկները», «Քարավանը», Ալ. Սպենդիարյանի երաժշտության հիման վրա ստեղծված «Էնզելին»:

«Այն, ինչ ունեցել է ժողովուրդը, երբեք չի կարելի կորստյան մատնել, պետք է պահպանել աչքի լույսի պես: Հայ պարողները չեն մոռանում այդ: Դրա շնորհիվ հայկական պարը ապրում է և շրջում աշխարհում: Անսամբլի տված մի քանի հազարի հասնող համերգները ուրախություն են պարգևել մարդկանց՝ աշխարհի բոլոր ծայրերում»,— ասել է ՍՍՀՄ ժող. արտիստ, սոցիալիստական աշխատանքի հերոս Իգոր Մոիսեևը:

*ԿԱՄՈ ՄԿՐՏՉՅԱՆ*

# «ՀՐԵՂԵՆ ՁԻՆ»




«Սովետական գրող» հրատարակչության լույս ընծայած «Հրեղեն ձին» ժողովածուն լավ նվեր էր բոլոր նրանց, ում համար թանկ է մեր ժողովրդի բառն ու բանը, հազարամյակների խորքը գնացող բանահյուսությունը: Սիրելի՛ դպրոցականներ, այս գիրքը ստեղծվել է ձեր ուժերով՝ ձեր հավաքած բանարվեստի նմուշներով: 1500 դպրոցականներ են մասնակցել գրքի ստեղծմանը: Հայաստանի, Վրաստանի, Ադրբեջանի և ՌՍՖՍՀ Կրասնոդարի երկրամասի հայկական դըպրոցների աշակերտությունը շուրջ երկու տարի մասնակցելով «Պատանի բանահավաք» շարժմանը, գրառում էին իրենց պապիկների ու տատիկների, հայրիկների ու մայրիկների, ծանոթների ու բարեկամների, մի խոսքով՝ ժողովրդի բանարվեստի նմուշները, այդպիսով կորստից փրկելով հազարավոր բանահյուսական գանձեր: Դրանք քաջությունը, հնարամտությունն ու բարին գովերգող հեքիաթներ, զրույցներ, ավանդույթներ են, գեղջկական անաղարտ ու զուլալ երգեր և խաղիկներ են, հանելուկներ, դարավոր իմաստությամբ լեցուն առած-ասացվածքներ: Հավաքած նյութերից շուրջ հազար նմուշ տեղ է գտել այս ժողովածուում, իսկ ողջ նյութի հիման վրա ՀՍՍՀ ԳԱ հնագիտության և ազգագրության ինստիտուտում ստեղծվել է հատուկ ֆոնդ:

Նյութերի ընթերցանությունը դյուրացնելու համար գրքի կազմող Սերգեյ Վարդանյանը ոչ միայն մշակել և վերապատմել է դրանց մեծ մասը, այլև բացատրել շուրջ 750 բարբառային բառ:

Վերջերս ցեղագիտական դաստիարակության հանրապետական կենտրոնում ստեղծվել է «Պատանի բանահավաք» ստուդիա, որտեղ երեխաները, այս գործը նախաձեռնողի՝ Սերգեյ Վարդանյանի ղեկավարությամբ շարունակում են նորանոր բանահյուսական նմուշներ գրառել:

Սիրելի՛ դպրոցականներ, եթե դուք ևս ցանկանում եք մասնակցել հայրենանվեր այս գործին, ապա այսօրվանից գործի՛ անցեք:




... Ալյումինը հայտնի էր դեռ հնագույն ժամանակներում:

Ընդունված է, որ ալյումին սկսել են ստանալ 19-րդ դարի վերջերին, քանի որ այս մետաղի ստացումը մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա է պահանջում: Սակայն հռոմեացի գիտնական Պլինիոսը իր աշխատություններից մեկում հաղորդում է, որ Տիբերիոս կայսրը մեր թվարկության 86 թվին

# ԿՈՉ՝ հանրապետության դպրոցականներին

Հայ ժողովուրդն իր բազմադարյան պատմության ընթացքում ստեղծել է բանարվեստի անթիվ գանձեր, որոնք Հովհ. Թումանյանի դիպուկ բնորոշմամբ, «ժողովրդի հանճարի, նրա ոգու և մտքի, ազգային բնավորության, աշխարհայացքի ու շնորհքի լավագույն ծնունդներն են»: Բանահյուսական նյութերի գրառումն ու հրատարակումը հայ իրականության մեջ մեկ հարյուրամյակից ավելի պատմություն ունի: Մեր օրերում է՛լ ավելի է աճել հետաքրքրությունը բանարվեստի նկատմամբ: Այսօր բազմաթիվ գիտական արշավախմբեր ու անհատներ հավաքում և կորստից փրկում են մեր ժողովրդի հոգևոր մշակույթի արժեքավոր նմուշներ:

Գեղագիտական դաստիարակության հանրապետական կենտրոնը կոչ է անում բոլոր դպրոցականներին՝ իրենց գործուն մասնակցությունը բերելու հայրենասիրական այս շնորհակալ շարժմանը: Ժողովրդի հիշողությունը առ այսօր պահել է բանարվեստի անթիվ մարգարիտներ, որոնք եթե հիմա գրի չառնվեն, ապա վաղն անդարձ կկորչեն: Դուք արդեն փորձ ունեք, ձեր ջանքերով է ստեղծվել «Հրեղեն ձին» բանահյուսական ժողովածուն:

Սիրելի՛ դպրոցականներ, այսօրվանից գործի՛ անցեք, ձեր տատիկներից ու պապիկներից, ծնողներից, հարազատներից ու ծանոթներից գրի՛ առեք ժողովրդական հեքիաթներ, զրույցներ, ավանդություններ, առակներ, երգեր, խաղիկներ, հանելուկներ, առած-ասացվածքներ, շուտասելուկներ, մի խոսքով՝ բանահյուսական բոլոր ժանրերի նմուշներ և ուղարկեք գեղագիտական դաստիարակության հանրապետական կենտրոն: Հիշե՛ք, որ պետք է գրառել բարբառով, առանց փոփոխելու լեզուն և բովանդակությունը: Նյութի վերջում չմոռանաք մանրամասն տեղեկություններ հաղորդել պատմողի՝ ասացողի մասին (անուն-հայրանուն-ազգանուն, ծննդյան թիվ և վայր, բնակավայր, մասնագիտությունը և կրթությունը, ումից է լսել, երբ, որտեղ): Նշեք նաև ձեր դպրոցն ու դասարանը: Նրանք, ովքեր հնարավորություն ունեն, կարող են ուղարկել նյութի ձայնագրությունը: Լավագույն նյութեր գրառողները կխրախուսվեն դիպլոմներով, պատվոգրերով և հուշանվերներով:

Մեր հասցեն է՝ 375001
Երևան, Աբովյան 13,
ԳԵՂԱԳԻՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԿԵՆՏՐՈՆ

մի զարմանալի նվեր է ստացել՝ արծաթափայլ մի գավաթ, սակայն որը արծաթից շատ ու շատ թեթև էր: Վարպետի ասելով, այն պատրաստված էր «կավից»:

Քիմիկոս Վ. Յակոբը (ԳԴՀ) որոշեց ստուգել, թե որքանով են ճիշտ այդ տեղեկությունները և վերջիվերջո կարողացավ ալյումին ստանալ սպիտակ կավի, ածխափոշու, կերակրի աղի ու պոտաշի խառնուրդից: Բոլոր այս նյութերը հնում հայտնի էին: Գիտնականը հալումը կատարեց փայտածուխով տաքացող հալոցում: Ըստ երևույթին Պլինիոսի գրառումը համապատասխանում է իրականությանը:




Փոքրիկ, բայց խիստ գիշատիչ այս մկնակերպը ապրում է բոստանների քարե ցանկապատերի մեջ:

Հանկարծ հայտնվում է ցանկապատի վրա, վզի դյուրաթեք շարժումներով նայում շուրջն ու վազում: Վտանգ զգաց՝ կորչում է քարախոռոչներում ու բոլորովին այլ տեղից հայտնվում: Հավերը սրան նկատելիս կչկչալով փախչում են, իսկ ինքը զանգակի ձայնից է շատ վախենում: Դրա համար էլ տատըս ամեն գարնան, նախքան թուխսի ճտեր հանելը, մեզ պատվիրում էր բոստանի պատի երկայնքով զանգակ զնգզնգացնել, որպեսզի Զմուկը փախչեր այդ տեղերից:

Մենք զանգակ էինք զնգզնգացնում բոստանի պատի երկայնքով ու հետը երգելու պես կրկնում.

Զմուկ, փախիր,
Սուտ է, սուտ,
Ոչ հավ ունենք,
Ոչ էլ ճուտ...

— Քանի Աբուլի գլխին ձյուն կա, Զմուկի մորթին բալակ է՝ խայտաբղետ: Քանի Զմուկի մորթին բալակ է, պարզ գիշերներին կարող է եղյամ դնել,— ասում էր տատս ու ավելացնում.

Չգիտեմ՝ որտեղ, որ տարին,
Չար Զմուկը խեղդեց մի հավ,
Տերն ու շունը վրա տվին,
Ու Զմուկը շատ վախեցավ,
Հազիվ գլուխն իր ազատեց,
Քարերի մեջ պատսպարվեց:
Բայց երբ սովը նրան նեղեց,
Նա աստծուն դարձավ՝ դիմեց.
— Աղաչում եմ աստված ես քեզ,
Ինչ կլինի գույնս փոխես...
Փոխված ելավ քարի տակից,
Ճուտ գողացավ ուրիշ բակից,
Այստեղից էլ հազիվ փրկվեց,
Մացառները իրեն նետեց...
Բայց երբ նորից սովը նեղեց,
Նա աստծու փեշը բռնեց.
— Մեռնեմ, աստված քո անունին,
Վերադարձրու գույնը իմ հին
Լսեց տերը ու զայրացավ,
Ու ցասումով նրան ասավ.
— Քեզ եմ թողնում շնորհքը էս՝
Երբ ուզենաս՝ գույնդ փոխես...
Այդ օրվանից այս Զմուկը
Փոփոխում է մորթու գույնը,
Ամառ է՝ գորշ, ձմեռ՝ ճերմակ,
Գարուն, աշուն քանի լեռան
Գլխին կա հին, կամ նոր ձյունը,
Բալակ է իր մորթու գույնը:






Աղավնիներին որպես կապի միջոց օգտագործել են դեռևս Հին Հունաստանում: Նրանց օգնությամբ տեղ էին հասցնում օլիմպիական խաղերում հաղթողների անունները:

Պարզ ու խաղաղ եղանակներին փոստատար աղավնին 800 կիլոմետր կարող է հաղթահարել 10 ժամում և կանոնավոր հասցնել փոստը:

Փոստատար աղավնիների ծառայությունից օգտվում էին փարիզցիները, երբ 1870 թվականին գերմանական զորքերը պաշարել էին ֆրանսիացիների մայրաքաղաքը:

Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ փոստատար աղավնիներ էին օգտագործում անգլիացիները, ֆրանսիացիները, ճապոնացիները: Հիմա փոստատար աղավնիները արագության սպորտային մրցումների են մասնակցում 300-ից մինչև 1200 կիլոմետր տարածություններում:



...Ռոբերտ Ֆուլթոնի անվան հետ են կապված երկու արմատացած սխալներ:

Նախ՝ նա շոգենավի առաջին գյուտարարը չէ: Նրանից առաջ առնվազն վեց հոգի արդեն արել էին այդ գյուտը: Ինքը՝ Ֆուլթոնն էլ կարող էր հետևել ամերիկացիներ Ջեյմս Ռամսեյի ու Ջոն Ֆիչի հաջող փորձարկումներին: Նրանցից առաջինը շոգեշարժիչով նավը փորձարկել է Պոտոմակ գետում, մյուսը՝ Դելավեր գետում: Դա կատարվել է Ֆուլթոնի առաջին շոգենավից քսան տարի առաջ: Երկրորդ սխալն այն է, որ նրա շոգենավը երբեք էլ չի կոչվել «Քլերմոնթ», ինչպես գրված է բազմաթիվ հոդվածներում, գրքերում և նույնիսկ հանրագիտարանում: Իրականում այն կոչվել է «Հյուսիսային գետի շոգենավ»: Ֆուլթոնի առաջին կենսագիր Ք. Քոլդենը սխալմամբ հաղորդել է «Քլերմոնթ» անունը, որը և մտել է գրականության մեջ:

... Խաղաղ օվկիանոսում, Հարավային Ամերիկայի ափերից 650 կիլոմետր հեռավորության վրա գտնվում է մի կղզի, որը կրում է լեգենդար Ռոբինզոն Կրուզոյի անունը:

18-րդ դարի սկզբին այս կղզում, լրիվ միայնակ, ավելի քան չորս տարի ապրել է անգլիացի նավաստի Ալեքսանդր Սելկիրկը: Նրա ամենօրյա պայքարը գոյատևման համար հետագայում հիմք հանդիսացավ Դանիել Դեֆոյի վեպի համար: Այժմ կղզում 600 մարդ է ապրում: Կղզիաբնակների հիմնական զբաղմունքը ձկնորսությունն է:



# Ժայռափոր քաղաքը






Վերածննդի նկարիչ Ռաֆայելը մի անգամ առանց գրպանում գրոշ իսկ ունենալու մտնում է խորտկարան ճաշելու: Երբ վճարելու ժամանակը գալիս է, նա վերցնում է տակառիկներից մեկի փայտե կափարիչն ու վրան նըկարում փողոցում նստած մի կնոջ՝ փոքրիկ երեխան գրկին: Այդ նկարը նա տալիս է իբրև ճաշի վարձ: Այժմ այդ գլուխգործոցը զարդարում է Իտալիայի թանգարաններից մեկը:

***

Ռուս նշանավոր գրող Ֆոնվիզինի «Տհասը» պիեսի հերոսի՝ Միտրոֆանուշկայի նախատիպը եղել է գրողին քաջ ծանոթ Օլենինների որդին՝ Ալեք-

Սպիտակ—Լենինական խճուղու 10-րդ կիլոմետրի վրա, երբ նոր ճանապարհի կառուցման համար պայթեցման աշխատանքներ էին կատարվում, բացվեց արհեստական քարանձավների միջնադարյան մի բնակավայր: Պայթեցման հետևանքով շինությունների կեսից ավելին ավերվեց: Պահպանված մոտ 30 քարանձավները բաղկացած են մեկ, երկու և ավելի սենյակներից: Սենյակներն ունեն փորվածքներ ճրագների համար, առաստաղների վրա՝ օղանցքներ, գաղտնուղիներ և այլն:

Անձավներում կան տարբեր չափսերի օջախներ, փոսորակներ, հորեր, որոնք իրար հետ կապված են նեղ առվակներով: Դատելով խարամի մնացորդներից, այստեղ երկաթ են հալել և թրծել են կավ:

Պեղումների ժամանակ հայտնաբերվել են 12-րդ դարի կավե ջնարակված թասեր, զենքեր, զարդեր, 13—14-րդ դարերի արծաթե, պղնձե դրամներ և այլ իրեր:

Սպիտակի ժայռափոր քաղաքը կառուցվել է Շիրակից Վրաստան և հյուսիսային Կովկաս տանող հիմնական քարավանային ճանապարհի վրա:

Քարանձավ-քաղաքի խոշոր նմանօրինակը գոյություն ունի Շիրակի հին մայրաքաղաք Անիում, սակայն Անիում վկայություն չկա այնպիսի մեծ արտադրության մասին, ինչպիսին եղել է այստեղ:

Սպիտակի քարանձավ-քաղաքը մեր հանրապետությունում իր տեսակի մեջ միակն է, որտեղ աշխատել և միաժամանակ ապրել են հարյուրավոր մարդիկ:

Պեղումները խոսում են այն մասին, որ 14-րդ դարում քաղաքը ենթարկվել է հարձակման և կյանքն այնտեղ դադարել է:

16—18-րդ դարերում քաղաքը նորից է կենդանացել, նորից սկսել են ծխալ նրա օջախները, բայց հետո բնակավայրը լքվել է այս անգամ արդեն ընդմիշտ:

սեյը: Պատմում են, որ երբ Ալեքսեյը իր կերպարը տեսել է բեմում, ցնցվել է: Այդ օրվանից նա թողնում է անգործությունն ու ծուլությունը, գլխից հանում է վաղ ամուսնանալու միտքը (հիշու՞մ եք՝ «Սովորել չեմ ուզում, ամուսնանալ եմ ուզում») և սկսում է լրջորեն սովորել և տարիների ընթացքում դառնում է ժամանակի ամենազարգացած մարդկանցից մեկը՝ Պետերբուրգի հանրային գրադարանի դիրեկտորը, գեղարվեստի ակադեմիայի պրեզիդենտ, բազմաթիվ գիտական աշխատանքների հեղինակ:

## ՈՍԿԵ ԵՐԱԿ

Ճապոնական Նակաիձու առողջարանի հյուրանոցներից մեկում տեղադրվել է զուտ ոսկուց պատրաստված լողարան: Հինգ րոպե «ոսկու մեջ լողանալը» արժե մոտավորապես 25 դոլար: Սովորաբար լոգանքից հետո, հիշատակի համար նաև նկարահանվում են, որն էլ հավելյալ 40 դոլար է նստում:

Այդպիսով դեղին մետաղից պատրաստած տաշտակը տիրոջ համար դարձել է ոսկեբեր երակ:




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց № 15: Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 9 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1982

Պ. ՀԱԿՈԲՅԱՆ— Աբովյանի տուն-թանգարանը Քանաքեռում . . . . . . 1
Ստեղծագործում են դպրոցականները 2, 3, 4
Ե. ՊԵՏՐՈՍՅԱՆ— Հեքիաթ . . . . . 7
Ղ. ՍԻՐՈՒՆՅԱՆ—Ինչպես ծնվեց այս երգը, Համերգ . . . . . . . . . . 7
Անունը Սիրանուշ է . . . . . . . 8
Լ. ՀԱԽՎԵՐԴՅԱՆ— Ջրույցներ լեզվի մասին . . . . . . . . . . . 10
Վ. ԹԱՄԱՐՅԱՆ— Աղունացի բուրմունքը . 12
Գիտե՞ք որ . . . . . . 13, 26, 29
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— Աստղերի տունը 14
Իրենք իրենց մասին : . . . . . . 15
Վ. ԿՈԶԼՈՎ— Բազեի որսը . . . . . 16
Մեր հյուրը— Հայաստանի պարի պետական անսամբլը . . . . . . . . 24
«Հրեղեն ձին» . . . . . . . . 26
Կոչ՝ Հանրապետության դպրոցականներին 27
Վ. ՀՈՎՍԵՓՅԱՆ— Ջմուկը . . . . . 28
Ծայրափոր քաղաքը . . . . . . . 30
Ծպիտներ . . . . . . . . . . 30

Շապիկի առաջին էջի լուսանկարը՝
ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ՄԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.

Գեղ. խմբագիր՝
Ա. ԿԻԼԻԿՅԱՆ
Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ
Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 2.07.1982: Ստորագրված է տպագրության 3.09.1982: ՎՖ 01915: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակ՝ Նոր: Օֆսեթ տպագրություն, 3,9 պայմ. մամ., 3,1 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 65332: Պատ. 1696: Գինը՝ 15 կ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. № 2:

Типография Издательства ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.




Մի անգամ, երբ Արևելքի մեծ իմաստուն Ալի Խոզրաթը ցանկանում էր հեծնել ձին, նրան մոտեցավ մի անցորդ ու ասաց.

— Օ՜, իմաստուններից ամենաիմաստուն, դու, որ գիտես, թե քանի աստղ կա երկնքում ու քանի ավազահատիկ անապատում, ասա ինձ, այն ո՞ր թիվն է, որ անմնացորդ բաժանվում է երկուսի, երեքի, չորսի, հինգի, վեցի, յոթի, ութի և իննի վրա:

— Օ՜, հարգարժան մարդ,— պատասխանեց իմաստունը,— բազմապատկիր շաբաթվա օրերի թիվը ամսվա օրերի թվով և տարվա ամիսների թվով, և դու կիմանաս քեզ հետաքրքրող թիվը:

Փորձեք պարզել, ճի՞շտ է արդյոք պատասխանել իմաստունը: Հիշեք, որ Ալի Խոզրաթը նկատի է ունեցել այնպիսի ամիս, որն ունի երեսուն օր:




Գիտե՞ք արդյոք, որ նշանավոր բանաստեղծ Օմար Խայյամը նաև տաղանդավոր մաթեմատիկոս էր: Օրինակ, նրան է պատկանում հետևյալ հանրահաշվական հավասարումը.

$$\frac{1}{x^2}+2\frac{1}{x}=1\frac{1}{4}$$

Փորձեք դուք էլ այն լուծել:

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.		ԻՆԴԵՔՍ՝ 77806



Լուսանկարը՝ ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ

Արդեն տասներկուերորդ տարին է, ինչ հարյուրավոր դպրոցականներ են մասնակցում մանկական պատկերասրահի նախաձեռնությամբ անցկացվող կավճանկարի մրցույթին: